Haitho

# ՀԵԹՈՒՄ ՊԱՏՄԻՉ

## ԹԱԹԱՐԱՑ

ՑԵՂԵԱԼ Ի ԼԱՏԻՆ ՕՐԻՆԱԿԷ Ի ՀԱՅ ԲԱՐԲԱՌ

Ի ՁԵՌՆ Հ. ՄԿՐՏԻՉ ԱԹՈՌԱԿԱԼ ՎԱՐԴԱՊԵՏԻ

ԱՒԳԵՐԵԱՆ



Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՑՆ ՂԱԶԱՐՈՒ

ՅԱՄԻՆ 1842 ՌՄՂԱ

## ԲԱՆ ԱՌ ՎԵՐԾԱՆՈՂՍ

# ՎԱՍՆ ՀԱՅԿԱԿԱՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆՍ

ԳԵՂԵՑԻԿ են այս դէպք բարեպաշտ և արքայական իշխանիս Հայոց Հեթմոյ տեառն Կոռիկոսոյ 'ի Կիլիկիա, ազգակցի Թագաւորաց մերոց Հեթումեանց. զի յետ արքունի և պատերազմական մարզից ինքնակամ հրաժարեալ յաշխարհէ՝ գնայ 'ի Կիպրոս և անդ կրօնաւորի առ փրանկիսկեան միանձունս, ուսանելով և զբարբառ գաղղիական. և 'ի դիմել իւրում յարևմուտս, 'ի խնդրոյ այլոց գրեաց զպատմութիւն Թաթարաց հանդերձ աշխարհագրական տեղեկութեամբք զարևելեան թագաւորութեանց ժամանակին։ Նման հայերէն բնագրի չիք յիշատակ. այլ որպէս և զիարդ գիտէրն խօսել 'ի լեզու գաղղիացի, այնպէս թելադրեաց խնդրողին և հարթողի զգաղղիական գրութիւն. և թուի յաւելեալ ինչ ինչ յիւրմէ, ուստի թարգմանեցաւ և 'ի լատինականն։ Եւ ահա 'ի լատին օրինակէ անտի անկելոյ 'ի մեր ձեռս՝ իւիք իւիք վրիպակօք և անհարթ ոճով, թարգմանեցաք նիւթապէս և մեք յետոյ ուրեմն հայկական լեզուաւ, զի մի անյիշատակ մնասցէ յազգիս։ Միայն գտաք զհայերէնագիր ժամանակագրութիւն ինչ նորին Հեթմոյ պատմչի, զոր և յաւարտ պատմութեանն տպագրեմք աստանօր։ Նա ինքն Հեթում տայ դոյզն գիտութիւնս զանձնէ 'ի կարգի պատմագրութեանս 'ի գլուխ խզ. խառն ընդ բանս գաղղիացի գրչի։ Եւ միոյ լատին օրինակագրի է և պատուաստ առաջիկայ յառաջաբանիս։

ՈՒՐՈՒՄՆ ԼԱՏԻՆ ԳՐՉԻ

## ՎԱՄՆ ՊԱՏՄԱԿԱՆ ԳՐՈՑՆ ՀԵԹՄՈՑ

*ԱՅՆ ինչ դիպաւ Հեթմոյ, որ ինչ Մարկոսի Պաղոսի վէնետկեցւոյ. վասն զի երկաքանչիւրն նախ զգիրս իւր շարագրեաց 'ի բնիկ լեզու, նա իտալերէն, սա գաղղիերէն : Յետոյ՝ որպէս այն դար ոչ ինչ այլ վարէր, բայց զբարբարոսական ոճ, երկաքանչիւրն իսկ զանոճ և զանհարթ թարգմանիչ գտեալ, անշուք ոճով տուեան լատին ընթերցողաց, քան զոր մարթ էր փափուկ լսելեաց հաճոյ լինել պարզութեն այն. այլ ճշմարտութիւնն է պարզախօս, և անսեթևեթ գրողաց իսկ իւրոց պահէ զիւր պատիւ 'ի շարժել զայլս 'ի խնդիր ճշմարտութեան :*

*Հեթումս այս էր հայազգի՝ յարքունի զարմէ ծնեալ. այլ զազնուատոհմութիւն իւր յոչինչ համարեալ 'ի Քրիստոս, և արհամարհեալ զաշխարհ և զոր ինչ յաշխարհի են, զմիայնակեաց ընտրեաց կեանըս, որպէս զի մեկուսացեալ 'ի զբաղմանց կենցաղոյս՝ ազատ և համարձակ պարապեսցէ 'ի Քրիստոս. զայսոսիկ գրէ նա զանձնէ իւրմէ : Իսկ թարգմանիչ նորա եղև ՙՆիկողայոս Սալկոնի, որ 'ի հրամանէ ծայրագոյն քահանայապետին Կղեմայ հինգերորդի 'ի քաղաքն Պիկդաւիոյ նախ զայս գիրս գաղղիերէն գրեաց, որպէս և զիարդ թելադրեցաւ նմա 'ի Հեթմոյ, և ապա 'ի լատինն վերածեաց ըստ կարի յամի տեառն* 1307 :

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ԹԱԹԱՐԱՑ

## ԱՐԱՐԵԱԼ Ի ՀԵԹՄՈՅ ԱՐԱՄԵԱՆ

### Ի ԿԱՐԳԷ ՊՐԷՄՈՆՍՏՐԱՏԵԱՆՑ



## ԳԼՈՒԽ Ա.

*Յաղագս Թագաւորութեան Կաթայի (կամ Խութայի)։*

ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆՆ Կաթայի է մեծն քան զոր մարթ իցէ գտանել ընդ տիեզերս, լի ազգօք և անբաւ մեծութեամբք, առ ափն Ովկիանու. և այնչափ կղզիք ծովու են անդ, զորոց զթիւ անմարթ է գիտել. զի չիք ոք որ տեսեալ իցէ զայն ամենայն կղզիս։ Իսկ յորս կարէ հասանել ոտն մարդոյ, են ձոխք անհամար փարթամութեամբք և գանձիւք։ Եւ որ մեծագնի է 'ի կողմանսն յայնոսիկ և յարգոյ, է իւղ ձիթենեաց զոր թագաւորք և մեծամեծք տան պահել զայն որպէս գլխաւոր դեղ մեծաւ զգուշութեամբ։

Ի նոյն թագաւորութեան Կաթայի կան բազում զարմանալի կենդանիք այլանդակք, զորովք զանց առնեմ ասել։ Մարդիկ կողմանցն այնոցիկ ճարտարամիտք են և ամենայն խորամանկութք լիք. վասն որոյ յամենայն արուեստս և 'ի գիտութիւնս անարգ համարին զայլ ամենայն ազինս. և ասեն՝ թէ ինքեանք միայն են երկու աչօք տեսողք, իսկ Լատինք միով ևեթ ակամբ տեսանեն. իսկ զայլս յազգաց կոյր լինել ասեն. և սովիմբ ստուգի բան նոցա, զի զայլս առհասարակ տխմարս համարին. վասն զի այնչափ իրք զար-

մանալիք և զանազանք և անպատմելիք նրբութեամբ և ձեռագործովք ’ի կողմանց անտի բերեալ լինին, զի ոչ ոք գտանի՝ որ յայնպիսի իրս կարիցէ ’ի կշիռ դնել զինքն։

Ամենեքին նոքա ’ի Թագաւորութենէ անտի Կաթայեցիք յորջորջին, և մերձ յազգս անդ իւրեանց յառովք գտանին գեղեցիկք յոյժ՝ արք և կանայք. բայց հասարակօրէն ամենեքին ունին աչս փոքրկունս, և ’ի բնէ անմօրուս են. և կաթայեցիքս այս ունին կարի գեղեցիկ նշանագիրս, որ լատին տառից ըստ իմիք նման են գեղեցկութբ։ Իսկ զաղանդս ազգաց այնր թագաւորութեան դժուարին է իւիք օրինակաւ նշանակել. քանզի ոմանք պաշտեն զկուռս ’ի մետաղաց, այլք արջառոց երկիր պագանեն, վասն զի գործեն զերկիր՝ ուստի բուսանի ցորեան և այլ արմտիք. ոմանք պաշտօն տանին մեծամեծ ծառոց. այլք բնական իրաց ծառայեն, և այլք աստղաբաշխութեան. են որ զարեգակն պաշտեն, և են որ զլուսին։ Իսկ այլք չունին հաւատս ինչ կամ օրէնս, այլ որպէս զանբան անասունս վարեն զանբանական կեանս իւրեանց. և թէպէտ նրբամիտ են հանճարով ’ի գործել զամենայն արարս մարմնաւորս, բայց ոչ ինչ ծանօթութիւն հոգևորաց գտանի առ նոսա։

Մարդիկ երկրին այնորիկ չեն յանդգունք, այլ յոյժ վատասիրտք. և հարկ է նոցա կարի սպառազինիլ. բայց մեծապէս ճարտարք են ’ի ծովու, ուր առաւել քան ’ի ցամաքի արարին յաղթութիւն ընդդէմ թշնամեաց իւրեանց. յոլով ազգս զինուց ունին, որ չգտանին յայլ ազինս։ Իսկ դրամն որ ծախի յայն ազգս, է ’ի կնիւնոյ ’ի ձևքառակուսի հանդերձ արքունի կնքով. և ըստ այնմ կնքոյ դրամն է մեծագին կամ սակաւագին. և եթէ դրամն այն խանգարեսցի առ հնութէն, տանին յարքունի դուռն, և առնուն փոխանակ այնր զնորս։ Իսկ յոսկւոյ և յայլոց մետաղաց առնեն անօթս և այլ զարդս։

Սահման այսր թագաւորութեան Կաթայի ասի, թէ ժամանակակից է սկզբնաւորութե աշխարհի. վասն զի է յարևելս ըստ միոյ կողմանն յորում չիք բնակութիւն այլոց ազգաց, որպէս պատմի։ Յարևմտից կող-

մանէ սահմանակից է ընդ Թագաւորութեան Տարսայ ։ Ի հիւսիսոյ կողմանէ ընդ անապատին Պեղճեան. իսկ ’ի հարաւոյ կուսէ են կղզիք ծովուն Ովկիանոսի ’ի վեր անդր նշանակեալք։

# ԳԼՈՒԽ Բ

## Յաղագս Թագաւորութեան Տարսայ։

Ի Թագաւորութեան Տարսայ են երեքնահանգք, որոց տէրութիւնք կոչել տան զինքեանս Թագաւորս։ Մարդիկ այնր կողման յորջորջին Եօգուր. միշտ ’ի կռապաշտութեան կացին, և ’ի նոյն կան տակաւին բաց ’ի տասն ազգատոհմից Թագաւորացն այնոցիկ, որք տեսլեամբ աստեղն եկին երկիր պագանել ծննդեան տեառն ’ի Բեթղեհէմ հրէաստանի. և ցարդ ևս բազումք գտանին ’ի մէջ Թաթարաց մեծամեծք և ազնուականք յազգականութենէ անտի, որք հաստատութեամբ ունին զհաւատս Քրիստոսի։ Իսկ այլ կռապաշտք ’ի կողմանց անտի անզօր են զինուք, բայց հանճարամիտք և ընդունակք յուսմունս արուեստից և գիտութեանց. ունին և առանձին նշանագիրս։ Եւ ամենայն բնակիչք սահմանացն այնոցիկ հրաժարեն ’ի մսոյ և ’ի գինւոյ, և ոչ իւիք սպանանեն զկենդանի ինչ։ Քաղաքք նոցա զուարճալի են յոյժ. և մեհեանս ունին բազումս, յորս պաշտեն զկուռս։ Ցորեան առատ բուսանի անդ, որպէս և այլ արմտիք. այլ չունին գինի, զոր ’ի մեղս համարին ըմպել, ոչ ինչ ընդհատ ’ի հազարացւոց։

Թագաւորութիւնս այս Տարսայ յարևելից կողմանէ սահմանակից է նախաճառեալ Թագաւորութեան Խաթայի. յարևմտից ընդ Թագաւորութեն Թուրքաստանի. ’ի հիւսիսոյ ընդ անապատի իմիք. իսկ ’ի հարաւոյ ընդ մեծահարուստ նահանգին, որ կոչի Սիւմ, որ է ընդ մէջ Թագաւորութեան Հնդկաց, և Թագաւորութեան Խաթայից. և ’ի նահանգի անդ գտանին ադամանդ քարինք։

## ԳԼՈՒԽ Գ

Յաղագս Թագաւորութեան Թուրքաստանի:

Թագաւորութիւն Թուրքաստանի յարեւելից կուսէ սահմանակից է Թագաւորութեն Տարսայ. յարեւմտից Թագաւորութեան Պարսից. 'ի հիւսիսոյ Թագաւորութեան Խորասանու. իսկ 'ի հարաւոյ ձգի մինչեւ յանապատն Հնդկաց: Յայսմ Թագաւորութե սակաւ են լաւ քաղաքք. դաշտս ունի ընդարձակս եւ արձակածաւալս վասն անդեայց. վասն որոյ բնակիչք տեղեացս մեծաւ մասամբ են հովիւք վրանաբնակք, իմա բնակեալք յայնպիսի տունս, զորս մարթ է դիւրաւ փոխել տեղւոջէ 'ի տեղի: Մեծ քաղաքն Թագաւորութեանս կոչի Ոկերրա: Սակաւ լինի ժողովել անդ գարի կամ ցորեան. իսկ գինի բնաւ ոչ ունին. ըմպեն զԿուրսամ եւ զայլ թեթեւ ըմպելիս զորս կազմեն, եւ զկաթն. որից ուտեն, եւ կորեակ եւ միս. եւ կոչին Թուրքք: Թէպէտ եւ մահմետականք են, բայց են եւ ոմանք 'ի նոսա որ չպահեն հաւատս կամ օրէնս ինչ. չունին գիր սեփական, այլ վարեն զարաբացի նշանագիրս 'ի քաղաքս կամ 'ի բանակս:

## ԳԼՈՒԽ Գ

Յաղագս Թագաւորութեան Խորազմեայց (կամ Խորասանու):

Թագաւորութիւն Խորազմեայց քաջ ամրացեալ է լաւ քաղաքօք եւ գիւղիւք, եւ բազում են անդ բնակիչք. քանզի երկիր է քաջաբեր եւ բարեխառն. ցորեան եւ այլ արմտիք ժողովին անդ բազում, բայց գինի սակաւ ունին: Թագաւորութիւնս այս սահմանակից է ընդ անապատի իմիք, որոյ երկայնութիւն ձգի ընդ հարիւր օրաչափս (յարեւելից). յարեւմտից տարածի մինչեւ 'ի ծովն Կասպից. 'ի հիւսիսոյ ընդ Թագաւորութեան Կոմանիայ, եւ 'ի հարաւոյ ընդ

նախասացեալ Թագաւորութեան Թուրքաստանի։ Մեծ քաղաքն Թագաւորութեանս կոչի Խորազմ, և մարդիկն Խորազմեայք․ հեթանոսք են, չունին գիր կամ օրէնս, և աւազակք են զինուք։ Կան 'ի նոսա որ կոչին Կոլտինք (քրիստոնեայք), և ունին լեզու սեփական, և զնշանագիրս և զարարողութիւնս Յունաց վարեն, և ըստ օրինակի նոցա առնեն զխորհուրդ մարմնոյն Քրիստոսի, և են ընդ հնազանդութեամբ պատրիարգին Անտիոքայ։

# ԳԼՈՒԽ Ե

### Յաղագս Թագաւորութեան Կոմանիայ։

Թագաւորութիւն Կոմանիայ մեծ է յոյժ, այլ առան- բարեխառնութե՜ օդոյն դժուարաբնակելի մարդկան․ քանզի ձմերանի 'ի տեղիս տեղիս այնչափ ցուրտ լինի, մինչև անհնար լինել կալ անդ մարդոյ կամ անասնոյ․ իսկ 'ի տեղիս տեղիս այնչափ ջերմ լինի ամարանի, մինչ զի չկարէ ոք կալ անդ 'ի տօթոյ, ևս և յերեսաց ճանճից։ Թագաւորութիւնս այս գրեթէ ողջոյն դաշտավայր է․ և յայնպիսի դաշտի չգտանին ծառք կամ փայտք, եթէ ոչ առ քանի մի քաղաքօք, որ ունին պարտէզս ինչ։ Ի դաշտս և 'ի վրանս բնակին այն ազգք, և փոխանակ փայտի վառեն զապաւառս անասնոց։

Թագաւորութիւնն Կոմանիայ յարևելից կուսէ սահմանակից է ընդ Թագաւորութեան Խորազմիայ և ընդ անապատի իմիք․ յարևմտից կուսէ կայ ծով մեծ, և ծովակ փոքր․ 'ի հիւսիսոյ սահմանակից է ընդ Թագաւորութեան Ռուսիայ․ և 'ի հարաւոյ ձգի մինչև 'ի գետ մեծ, որ գտանի 'ի քաղաքն Աթիլ կոչեցեալ․ ամ ըստ ամէ սառնու, և երբեմն զամն ողջոյն մնայ անդ սառուցեալ․ և մարդիկ գնան 'ի վերայ սառին, որպէս և անասունք՝ իբրև 'ի վերայ գետնոյ․ և առ ափն այնր գետոյ գտանին ծառք ինչ ցածք։ Իսկ անդր քան և յայնկոյս այնր գետոյ՝ են ազգք այլ և այլ զանազան, որ չեն 'ի համարի Թագաւորու-

թեան Կոմանիայ, բայց հնազանդ են Թագաւորին. Եւ են ոմանք որ բնակեն մերձ 'ի լեառն Կովկաս, որ բարձր է յոյժ և ահագին: Աստուրք և այլ հաւք մեծամեծք և յափշտակողք ծնեալք յայն լերինս սպիտակք են. և լեառնս այս կայ ընդ մէջ երկուց ծովուց. քանզի յարևմտից կուսէ է լեառն, և յարևելից կուսէ ծովն Կասպից, որ չունի ելս մուտս յՈվկիանոս. այլ է որպէս լիճ, բայց վասն մեծութեանն ծով կոչի. զի մեծ է քան զամենայն լիճս գտեալս յաշխարհի, վասն զի ձգի 'ի կասպեան լեռնէ անտի մինչև 'ի գլուխ Թագաւորութեան Պարսից, և բաժանէ զբովանդակ երկիրն Ասիայ յերկուս մասունս. և այն մասն՝ որ է յարևելից կուսէ, ասի խորին Ասիա. և միւս մասն՝ որ է յարևմտից կուսէ, ասի մեծ Ասիա: Եւ են 'ի նմա բազում ձկունք լաւք: Շուրջ զայնու լերամբ Կասպից գտանին գոմէշք և այլ բազում կենդանիք վայրի: Են և յայլ կողմանս յոլով կղզիք, յորս Թռչունք բոյնս դնեն, և մանաւանդ բազէք, 'ի ռամկաց բէգրիմ կոչեցեալք. և կոմէրլինք և պոնսագք և այլ բազում հաւք լինին անդ, որ ոչ այլուր երբէք գտանին, բայց յայն կղզիս: Մեծ քաղաքն կոմանեան Թագաւորութեանս կոչի՝ Սարա, որ 'ի հնումն էր ազնուական և մեծանուն, բայց տապալեցաւ և գրեթէ իսպառ աւերեցաւ 'ի Թաթարաց, որք բռնութեամբ առին զայն, որպէս ասասցուք զկնի:

## ԳԼՈՒԽ Զ.

### Յաղագս Թագաւորութեան Հնդկաց:

Թագաւորութիւն Հնդկաց է երկայնաձիգ յոյժ 'ի վերայ Ովկիանոս ծովու, որ 'ի կողմանսն յայնոսիկ ասի Հնդկային ծով: Այս Թագաւորութիւն սկսանի 'ի սահմանակցութենէ Թագաւորութեանն Պարսից, և ձգի ընդ արևելս մինչև 'ի գաւառն կոչեցեալ Պալարեմ. և յայնմ նահանգի գտանին քարինք պատուականք, որ պալայիս կոչին: Ի հիւսիսոյ կողմանէ է երկայն և մեծ անապատ Հնդկաց, ուր օձս բա-

զունմն և ազգի ազգի կենդանիս եգիտ, ասեն, Աղեքսանդր ինքնակալ։ Յայնմ թագաւորուէ քարոզեաց Թովմաս առաքեալ զհաւատս Քրիստոսի, և դարձոյց զյոլով գաւառս և զազգս. այլ քանզի 'ի բացեայ են յոյժ յայլոց աշխարհաց և 'ի տեղեաց, յորս պաշտի հաւատքն քրիստոսական, անդ կարի նուազեցաւ. և մի միայն քաղաք է անդ՝ յորում քրիստոնեայք բնակեն. իսկ այլք առ հասարակ թողին իսպառ զհաւատս Քրիստոսի։

Իսկ 'ի հարաւոյ կուսէ ընդ երկայն է Ովկիանոս ծով, յորում են կղզիք բազումք. և մարդիկն բնակեալք 'ի նոսա են սեաւք, և մերկ շրջին բոլորովին, ամարանի վասն տօթոյն. և անմտաբար պաշտօն տանին կռոց։ Ի կղզիս անդ գտանին ակունք պատուականք՝ մարգարիտ և ոսկի. և բազում տեսակք դեղորէից, զորս բազում անգամ առեալ բերեն մարդիկ այսր աշխարհի։

Անդ է և կղզի մի՝ որ կոչի Սէյլան, յորում գտանին քարինք կոչեցեալք կարմիր յակինթ և շափիւղայ. և թագաւորն կղզւոյն ունի յակինթ մի անգիւտ մեծ և ընտիր. և 'ի պսակիլն 'ի թագաւոր, զքարն զայն ունի 'ի ձեռին իւրում, և նստեալ յերիվար շրջի ընդ քաղաքն. և յայնմ հետէ ամենեքին հնազանդին նմա իբրև թագաւորի։

Աշխարհն հնդկաց է իբրու կղզի, և շուրջ պատեալ 'ի նախանշանակեալ անապատէ և յՈվկիանոս ծովէ. այնպէս զի դժուարին է ումեք մտանել յաշխարհն յայն, բայց 'ի միոյ եւեթ կողմանէ, այսինքն 'ի կողմանէ թագաւորութեանն Պարսից. և վաճառականք որք կամին մտանել յայն երկիր, նախ երթան 'ի քաղաքն Հերմէս կոչեցեալ, զոր հիմնեաց Հերմէս իմաստասէրն ճարտարարուեստաբար՝ որպէս քաղաքապետ, և անտի անցանեն ընդ բազուկ մի ծովու՝ մինչև եկեսցեն 'ի քաղաքն Կոմպաք. և անդ գտանին հաւք պապկայք կանաչագոյնք. և այնչափ է 'ի կողմանսն յայնոսիկ բազմութիւն այդր հաւուց, որչափ ճնճղկանց յերկրիս յայսմիկ։ Յայնմ նաւահանգստի գտանեն վաճառականք զամենայն վաճառ՝ զոր կամին. և եթէ կամիցին այլ ևս յառաջ խաղալ, անաշխատ

կարէին երթալ։ Յերկրի անդ ոչ ունին առատութիւն գարւոյ կամ ցորենոյ. այլ ուտեն բնակիչք կողմանցն այնոցիկ որիզ, կաթն, կոգի, և պտուղս՝ որ յաճախութեամբ բուսանին անդ։

# ԳԼՈՒԽ Է

Յաղագս Թագաւորութեան Պարսից։

Թագաւորութիւն Պարսից բաժանի յերկուս մասունս, այլ ընդ միով ևեթ թագաւորաւ որ ընդ հանուր տէր է կրկին մասանց աշխարհին։ Առաջին մասն Պարսից աշխարհին սկսանի յարևելս'ի սահմանակցութենէ թագաւորութեանն Թուրքաստանի, և ձգի ընդ արևմուտս մինչև'ի մեծ գետն Փիսոն, որ է առաջին 'ի մէջ չորից գետոց բղխելոց յերկրաւոր դրախտէ. և 'ի հիւսիսոյ կողմանէ ձգի մինչև'ի ծովն Կասպից. և 'ի հարաւոյ կուսէ մինչև յանապատն Հնդկաց։ Աշխարհն այն ըստ իմիք է բոլորն դաշտային. յորոյ 'ի միջի երկու քաղաքք են մեծամեծք և բազմահարուստք. յորոց մին կոչի Պոխտարա (Բուխարա), և միւսն Սեօնորգանտ (Սմրրղանդ)։ Բնակիչք կողմանցդ այդոցիկ կոչին Պարսիկք, և ունին լեզու սեպհական. ապրին վաճառականօք և երկրագործութեամբք. այլ ոչ մխին 'ի զէնս և 'ի կռիւս։ Յառաջագոյն պաշտէին զկուռս, և հրոյ երկրպագու էին իբրու գլխաւոր աստուածոյ. այլ յորժամ դենն Մահմէտի տիրեաց կողմանցն այնոցիկ, եղեն առ հասարակ սարակինոսք, Մահմէտի հաւատալով վարդապետութեան։

Իսկ միւս մասն սկսանի 'ի նախասացեալ Փիսոն գետոյ, և ձգի յարևմուտս մինչև 'ի սահմանակցութիւն թագաւորութեանն Մարաց, և մասամբ 'ի սահմանս մեծին Հայոց։ Իսկ 'ի կողմանէ հիւսիսոյ ձգի մինչև 'ի ծովն Կասպից. և 'ի հարաւոյ կուսէ սահմանակից է ընդ միում գաւառի թագաւորութե Մարաց. և յայնմ գաւառի են երկու մեծամեծ քաղաքք՝ Նիւշապուհ և Սպահան. այլ դենիւ և բարուք նման են նախագրելոց։

# ԳԼՈՒԽ Ը

### Յաղագս Թագաւորութեան Մարաց։

Թագաւորութիւն Մարաց էր յոյժ երկայն և նեղ։ Յարևելից կողմանէ սկսանի 'ի Թագաւորութենէ Պարսից, և մասամբ կից ընդ Թագաւորութեան մեծ Հնդկաց. և ձգի ընդ արևմուտս մինչև 'ի Թագաւորութիւն քաղդէացւոց։ Ի հիւսիսոյ կողմանէ սկսանի 'ի Թագաւորութենէ Հայոց մեծաց. և ձգի ընդ հարաւ մինչև 'ի քաղաքն Աքիսում, որ է 'ի վերայ Ովկիանոս ծովու. և անդ գտանէին մարգարիտք խոշորք, որ յածէին ընդ աշխարհ։

Ի Թագաւորութեան Մարաց են լերինք մեծամեծք, և դաշտավայրք սակաւ. և երկու գաւառք են անդ. և ազգք բնակեալք 'ի մին 'ի նոցանէ Սարակինոսք ասին. և այլք կոչին Կորդուացիք, (կամ Քիւրտք). երկուս ունին քաղաքս մեծամեծս, մին կոչի Սորակետ, և միւսն Աւրեմոն. օրինօք և գենիւ են մահմետական. զնշանագիրս վարեն արաբացւոց. և զինուք են քաջ աղեղնաւորք ոտանաւորք և հզօրք։

# ԳԼՈՒԽ Թ

### Յաղագս Թագաւորութեան Հայոց։

Յաշխարհին Հայոց են Թագաւորութիւնք չորք, բայց մի Թագաւոր կալաւ միշտ զտէրութիւնն։ Երկայնութիւն աշխարհին Հայոց սկսանի 'ի Թագաւորութենէ Պարսից, և ձգի ընդ արևմուտս մինչև 'ի Թագաւորութիւն Թուրքաց երկրին։ Լայնութիւն աշխարհին Հայոց սկսանի 'ի Մերալի քաղաքէ, որ կոչի երկաթի դուռն, զոր շինեաց արքայ Աղեքսանդր վասն պէսպէս և զանազան ազգաց բնակելոց 'ի խորն Ասիոյ. զի ոչ կամէր ունել նոցա մուտս 'ի մեծն Ա-

սիա առանց հրամանի իւրոյ . և է քաղաքն այն կառուցեալ յիմիք նեղուցի ծովուն Կասպից, և հասանէ 'ի մեծ լեառն Կովկաս ։

Իսկ լայնութիւն աշխարհին Հայոց ձգի մինչև 'ի Թագաւորութիւն Մարաց ։ Ի Թագաւորութեան Հայոց են բազում քաղաքք մեծամեծք և բազմահարուստք . այլ առաւել մեծահամբաւ է քաղաքն Դաւրէժ, և փարթամ քան զայլսն ։ Ի հայաստան աշխարհի կան լերինք մեծամեծք, դաշտք ընդարձակք, և գետք մեծամեծք, և լիճք քաղցրաջուր և աղէջուր, յորս գտանի առատութիւն ձկանց ։ Ազգք բնակեալք յաշխարհին Հայոց զանազան անուամբք կոչին ըստ գաւառաց և ըստ տեղեաց յորս կանն . և են հեծեալ և հետևակ քաջ պատերազմողք . զինուք, ձիովք և զգեստուք նմանողք են սովորութեան և ձևոց Թաթարաց, որ են ընդ նոցա տէրութեամբ յերկար ժամանակէ հետէ ։ Ունին նշանագիրս առանձինս, և այլս և՛ս որ ասին Հալօցէն (Հայոց կամ Աղուանից) ։

Ի հայաստան աշխարհի է բարձրագոյն լեառն՝ քան զոր ընդ ամենայն տիեզերս, որ ռամկօրէն առ ոմանս Արաթ կոչի (այն է Արարատ) . և 'ի գագաթան այդր լերին հանգեաւ տապանն Նոյի զառաջինն յետ ջրհեղեղի . և թէպէտ վասն շատութեան ձեանց՝ որ միշտ գտանին 'ի լերին անդ՝ ձմերանի և ամարանի՝ ոչ ոք կարէ ելանել յայն լեառն, բայց սակայն 'ի գագաթան նորա երևի ինչ մի սեաւ, զոր մարդիկն տապան լինել ասեն ։

## ԳԼՈՒԽ Ժ

Յաղագս Թագաւորութեան Վրաց ։

Թագաւորութիւն Վրաց յարևելից կուսէ սկսանի 'ի մեծ լեռնէ անտի՝ որ կոչի Ալպոնիս (Աղուանից). անդ բազում ազգք բնակեն զանազանք. և վասն այսորիկ նահանգն այն կոչի Ալանք (կամ Աղուանք). և անտի ձգի Թագաւորութիւնն Վրաց ընդ արև-

մուտս դէպ 'ի հիւսիս մինչև յերկիրս ինչ Թագաւորութեանն Թուրքաց երկրին ։ Երկայնութիւն նոյն Թագաւորութեան Վրաց ձգի 'ի վերայ ծովուն մեծի ։ Ի հարաւոյ կուսէ սահմանակից է ընդ Թագաւորութեան մեծին Հայոց ։ Թագաւորութիւն այն բաժանի յերկուս. մին կոչի Վրաստան (կամ Գուռձիստան), և միւսն Ապխազ (Ափխազք). և միշտ եղեն անդ երկու Թագաւորք. յորոց մին ներքոյ անկեալ է ինքնակալին Ասիոյ, այսինքն արքայն Վրաց. այլ արքայն Ափխազաց է հզօր ժողովրդովք և ամուր ամրոցօք. զի և ոչ ինքնակալն Ասիոյ, և ոչ Թաթարք կարացին նուաճել զնոսա ընդ լծով ։

Ի Թագաւորութեան աստ Վրաց տեսանի սխրալի իմն տեսիլ այլանդակ, զոր չիշխէի ասել կամ հաւատալ, եթէ չտեսանէի աչօք իմովք. այլ քանզի անձամբ եղէ անդ և տեսի, ասեմ. զի 'ի կողմանսն յայնոսիկ է գաւառ իմն, որ կոչի Համշեմ, և շրջապատ նորա երեքօրեայ. և որչափ տարածի գաւառն այն, տեղին այն այնչափ մառախլապատ է և խաւարչուտ այնպիսի նսեմութեամբ, զի ոչ ոք է՝ որ կարիցէ նշմարել ինչ անդ. և ոչ ոք է՝ որ համարձակեսցի մտանել յայն երկիր. զի ոչ գտանէ շաւիղ գնալոյ ընդ այն ։ Բնակիչք կողմանցն այնոցիկ ասեն, թէ բազում անգամ լուեալ իցէ նոցա զձայն գոչման մարդկան, զխօսել հաւու հաւախօսի, զխինջիւն երիվարաց յանտառի, և զխոխոջիւն գետոյ իբրև՝ որ անտի ելանէ. այս ամենայն նշանք հաւաստիք երևին անդ, թէ իցէ բնակութիւն ազգի անդանօր ։ Ստոյգ է՝ թէ ընթերցեալ գտանի 'ի պատմութիւնս Թագաւորութեանց Հայոց և Վրաց, թէ ոմն ինքնակալ չարավաստթար Շաւորէոս (կամ Շապուհ) անուն՝ կռապարիշտ և անագորոյն հալածիչ քրիստոնէից՝ յաւուր միում հրաման եհան, զի ամենայն բնակիչք Ասիոյ եկեսցեն և երկիր պագցեն կռոց. և որ միանգամ անսաստ գտցի հրամանի նորա, հրով այրեսցի ։ Սուտի դէպ եղև, զի ոմանք 'ի քրիստոնէից ընտրեցին զմարտիրոսութիւն՝ քան պաշտել զկուռս. այլք առ ժամանակեան երկիւղի երկիր պագին կռոց, զի մի զրկեսցին 'ի ժամանակեան իրաց. իսկ այլք դի-

մեցին 'ի լերինս և 'ի գերեզմանս, և անդ երևելապէս պահեցին զանձինս։ Իսկ զարմն քրիստոնէից լաւաց՝ որ բնակէին 'ի դաշտն Մողոն, խորհեցան լքանել զինչս իւրեանց, և անցանել յաշխարհ Յունաց։ Մինչդեռ նոքա յայս միտս էին, ընդ առաջ ել նոցա ինքնակալն՝ հրաման տուեալ, զի ամենեքին՝ որք չկամին զոհել կռոց, յօշյօշ կտրատեսցին. իսկ նոցա գոչեալ առ տէր Յիսուս Քրիստոս՝ ընդ ուղիղ շաւիղ գնացեալ ապրեցան։ Բայց անօրէնք յայն ձոր աղջամղջին մինչև ցայժմ նստեալ կան, և պարտին նստել մինչև 'ի կատարած աշխարհի. որպէս առ ամենեսին հաւատացեալ լինի և պատմի։

## ԳԼՈՒԽ ԺԱ.

Յաղագս Թագաւորութեան քաղդէացւոց։

Թագաւորութիւն քաղդէացւոց յարևելից կուսէ 'ի լերանցն Մարաց սկսեալ ձգի մինչև 'ի Նինուէ քաղաք մեծ և հին մերձ 'ի գետն Տիգրիս. այն քաղաք է՝ զորմէ խօսի սուրբ գիրն, իսկ այժմ է բոլորովին աւերակ. այլ այնոքիւք՝ որ տակաւին նշմարին 'ի նմին, մարթ է հաստատութեամբ հաւատալ, թէ լեալ իցէ մի 'ի մեծամեծ քաղաքաց աշխարհի։ Լայնութիւն Թագաւորութեան քաղդէացւոց սկսանի 'ի հիւսիսոյ կողմանէ 'ի քաղաքէ անտի, որ կոչի Մարաղա. և ձգի ընդ հարաւ մինչև 'ի ծովն Ովկիանու։ Մեծ քաղաքն քաղդէացւոց հասարակօրէն կոչի Բաբիլոն, և այնպէս իսկ կոչէր 'ի վաղուց. ուր եած գերութեամբ Նաբուգոդոնոսոր զորդիսն Իսրայէլի յԵրուսաղէմէ սրբոյ քաղաքէ։

Ի Թագաւորութեան քաղդէացւոց բազում են դաշտավայրք, և լերինք սակաւք. որպէս և ջուրք սակաւք անցեալք ընդ տէրութիւնն։ Բնակիչք աշխարհին քաղդէացւոց ոմանք Նաստուրք կոչին մոլորութեամբ Նեստորի, և վարեն զնշանագիրս քաղդէականս. իսկ այլք 'ի բնակչաց տեղւոյն վարեն արաբացի գրով, և ունին զդեն մահմէտական։

# ԳԼՈՒԽ ԺԲ

Յաղագս Թագաւորութեան Միջագետաց։

Թագաւորութիւն աշխարհին Միջագետաց 'ի կողմանէ արեւելից սկիզբն առնու 'ի մեծ քաղաքէն Մուսուլ, որ է կառուցեալ մօտ 'ի Տիգրիս գետ. և ընդ արեւմուտս ձգի ընդարձակութեամբ մինչև յԵփրատգետ և 'ի քաղաքն Ռոհա (կամ Ուռհա). որ եղև քաղաք Թագաւորութեանն Աբգարու. առ որ առաքեցաւ անձեռագործ պատկերն Վերոնիգա (կամ Իէրոն իգոն), որ այժմ 'ի Հռոմ գտանի։ Եւ մերձ յՈւռհա է երկիրն Խառան, յորում երբեմն Աբրահամ բնակէր. զոր հրաման ետ նմա տէր թողուլ և անցանել յերկիր աւետեաց յայնկոյս գետոյն Եփրատայ. ըստ որում լիով աւանդի 'ի սուրբ գիրս։ Այս երկիր Միջագետք անուանի, կամ յունական ձայնիւ Մէսօբօդամիա. վասն զի է ընդ մէջ երկուց գետոց դրախտին՝ Տիգրիսի և Եփրատայ։ Լայնութիւն երկրիս սկսանի 'ի միոյ 'ի լերանցն Հայոց, որ կոչի Մանսոն, և տարածի ընդ հարաւ մինչև յանապատն Արաբիոյ փոքու։ Երկիրս այս ունի բազում դաշտավայրս բարեբերս և զուարճալիս։ Երկուս լերինս ունի յոյժ երկայնս և պտղալիցս. մին 'ի լերանց անտի՝ որ է յարեւելից կուսէ, Սինիատ կոչի, և միւս լեառն Լիսսոն։ Սակաւ ջուրք խաղան ընդ այն երկիր. իսկ բնակիչք ըմպեն ջուր 'ի ջրհորոց և յաւազանաց։ Են 'ի նոցանէ ոմանք քրիստոնեայք, այսինքն Ասորիք և Հայք, իսկ այլք՝ Սարակինոսք օրինօք և դենիւ։ Քրիստոնեայ հայք՝ են հեծելազօրք և հետևակք քաջք. իսկ Սարակինոսք և Ասորիք ոչ մխին 'ի զէնս, այլ են արհեստաւորք և երկրագործք. և ոմանք՝ հովիւք խաշանց։ Բայց 'ի տեղի ուրեք՝ որ կոչի Մերտին, են ոմանք Սարակինոսք կարի քաջ աղեղնաւորք, և նոցա լեզուաւ Կորդուք (կամ Քիւրտք) կոչին։

# ԳԼՈՒԽ ԺԳ

Յաղագս Թագաւորութեան երկրին Թուրքաց։

Թագաւորութիւն երկրին Թուրքաց լաւ է յոյժ և ձոխ մեծութեամբք. բովս ունի արծաթոյ և ոսկւոյ, երկաթոյ և պղնձոյ, որպէս և պաղլեղի շատ։ Նոյն գտանին և առատութիւնք ամ արմտեաց և պտղոց և գինւոյ. և բազում են անդ անասունք, և առաւելապէս երիվարք ընտիրք։ Սահմանակից է յարևելից կուսէ ընդ մեծին Հայոց, և մասամբ ընդ վրաստանի. իսկ յարևմտից տարածանի մինչև 'ի քաղաքն Սատաղայ (Սատաղայ կամ Ստալեայ), որ կառուցեալ է 'ի վերայ ծովուն յունաստանի։ Ի հիւսիսոյ կողմանէ չէ սահմանակից երկրի իմիք, այլ երկայն ընդ երկայն ձգի 'ի վերայ ծովեզերաց մեծի ծովուն։ Իսկ 'ի հարաւոյ կուսէ սահմանակից է ընդ երկրորդ Հայք, և մասամբ ընդ Կիլիկիա, և մասամբ տարածեալ մինչև 'ի ծովն Յունաց, և հայի 'ի կղզին Կիպրոսի։ Այս աշխարհ 'ի զանազան ազգաց կողմանցն արևելից կոչի յունաստան. վասն զի յառաջ ժամանակաւ ինքնակալն Յունաց ընդ ձեռամբ սեպհականեալ ունէր զայս երկիր Թուրքաց, և 'ի ձեռն դքսից (կամ զօրավարաց) և պաշտօնէից կայսեր այնր ժամանակի կառավարիւր։ Իսկ յետ գրաւելոյ Թուրքաց զայն երկիր և բնակելոյ անդ, ընտրեցին տէր 'ի վերայ նոցա, և կոչեցին զնա Սուլդան, որ է ասել Թագաւոր։ Ըստ այնմ հետէ երկիրն այն կոչեցաւ երկիր Թուրքաց, մանաւանդ առ Լատինս։

Ի Թագաւորութեան երկրին Թուրքաց յոլով են գաւառք, որ ունին մեծամեծ և գլխաւոր քաղաքս։ Ի գաւառն Լիկայոնիայ մեծանուն քաղաք գտանի Կոնի (Կոնիա). որ է մեծագոյն քաղաքն Թագաւորութեան Թուրքաց։ Յերկրորդ գաւառի՝ որ ասի Կապադովկիա, է քաղաքն Կեսարիա յունաստանի։ Յերրորդ գաւառն ասի Իսաւրիա. և անդ է հին քաղաքն Սելևկիա։ Չորրորդն է փռիւգիա անուանեալ.

և անդ է քաղաքն Օիքիա յունաստանի ։ Հինգերորդն ասի Բիսիտան. և անդ է քաղաք նորա Եփեսոն ։ Վեցերորդն Բիւթանիա. և անդ է քաղաքն Նիկոր (Նիկկիա) ։ Եօթներորդն Պափղագոնիա. և անդ է քաղաքն Կինապօլիս ։ Ութերորդն ասի Կենեխ (Ճանիք), և 'ի սմա քաղաքն Տրապիզոն ։ Այս գաւառ ևեթ 'ի սակաւ ժամանակաց հետէ եղև թագաւորութի ըստ այսմ օրինակի ։ Յորժամ Թուրքք գրաւեցին զթագաւորութիւն երկրին Թուրքաց, չկարացին առնուլ զՏրապիզոն քաղաք և զորս ընդ նովաւ՝ վասն ամրութեան բերդիցն, և վասն այլոց ամրութեանց. և այսպէս մնաց ընդ իշխանութեամբ կայսերն Կոստանդինուպօլսոյ ։ Ի տնտեսութիւն այնր երկրի զմի կուսակալ ամ ըստ ամէ առաքէր կայսրն, դուքս կամ զօրավար անուամբ ։ Ուստի դէպ եղև զի ոմն 'ի դքսից կամ 'ի վերակացուաց տեղւոյն յապս-տամբութիւն բերեալ, կալաւ անձամբ զտէրութիւն երկրին, և արար զինքն թագաւոր. և որ յայնժամ կալաւ զերկիրն Տրապիզոնի, ետ զանձն կայսր կոչել ։

Բնակիչք կողմանցն այնոցիկ Յոյնք են, և զարարողութիւն Յունաց վարեն, և զյունականն տառս ունին ։ Մեք զՏրապիզոն եդաք 'ի համարի գաւառաց, և ոչ թագաւորութեանց, ըստ որում ուսուցանեն մեզ պատմութիւնք կողմանցն արևելից ։ Ի թագաւորութեան երկրին Թուրքաց բնակին քառեակ ազգք, այս ինքն Յոյնք, Հայք, և Յակոբիկք. սոքա քրիստոնեայք են, և կեան վաճառականութեամբք և երկրագործութեամբք. և Թուրքք՝ որ են Սարակինոսք, որ առին 'ի ձեռաց Յունաց զտէրութի այնր երկրի. և ոմանք ապրին վաճառուք և երկրագործութեամբ, և բնակին 'ի քաղաքս և 'ի գիւղս. իսկ այլք միշտ դիմեն յանտառս, և կան 'ի դաշտս՝ ձմերանի և ամարանի, որք են հովիւք խաշանց, և են կարի քաջ աղեղնաւորք ։

# ԳԼՈՒԽ ԺԴ

## Յաղագս Թագաւորութեան երկրին Ասորւոց։

Թագաւորութիւն Ասորւոց (կամ Սիւրիոյ) յարևելից կուսէ սկսանի 'ի գետոյն Եփրատայ, և ձգի ընդ արևմուտս մինչև 'ի քաղաքն Սամոս՝ որ 'ի վերայ ծովուն յունաստանի՝ 'ի գլուխ անապատին Եգիպտոսի։ Լայնութիւն Թագաւորութեան Ասորւոց 'ի հիւսիսոյ կողմանէ սկսանի 'ի Բիւրիտոն (Պէրիւթ) քաղաքէ, և տարածի մինչև 'ի Կրակկոս արքունի լերին. և յարևելից կուսէ սահմանակից է ընդ Միջագետս. և 'ի հիւսիսոյ կողմանէ ընդ երկրորդ Հայս, և մասամբ ընդ Թագաւորութեան երկրին Թուրքաց. իսկ 'ի հարաւոյ կուսէ ընդ արևմուտս չունի սահմանակցութիւն ընդ Թագաւորութեան իմիք. վասն զի յունական ծովն և Արաբիոյ անապատն պատեն զնա յերկուց կողմանց։

Թագաւորութիւն երկրին Ասորւոց բաժանի 'ի չորս մասունս կամ նահանգս, որք առ մեծութեան իւրեանց սովորաբար Թագաւորութիւնք 'ի հնումն կոչէին, և Թագաւորք 'ի նոսին նստէին. այլ 'ի պատմութիւնս արևելեայց գաւառք կոչին այնոքիկ, և ոչ Թագաւորութիւնք։ Առաջին գաւառն՝ որ է գլուխ Թագաւորութեանն Ասորւոց, կոչի Սեմ (Շամ). և 'ի միջին վայրի գաւառիս կառուցեալ է ազնուական քաղաքն Դամասկոս։ Երկրորդ գաւառն ասի Պաղեստին. յորում է սուրբ քաղաքն Երուսաղէմ։ Երրորդն ասի Անտիոքիա. և 'ի նմա են երկու մեծամեծ քաղաքք, այսինքն Հալէպ, և Անտիոք մեծ։ Չորրորդ գաւառն կոչի Կիլիկիա. և անդ է անուանի քաղաքն Տարսոն, ուր ծնաւ երանելի առաքեալն Պօղոս։ Եւ այս Կիլիկիա այժմ Հայք կամ Արմենիա յորջորջի. քանզի յորմէ հետէ Թշնամիք ք͞նական հաւատոյ զերկիրն զայն բարձին 'ի ձեռաց Յունաց, և ընդ երկար ժամանակ կալան զայն, Հայք այնչափ գուն գործեցին, զի զերկիրն զայն Կիլիկիոյ զերծին

'ի ժողովրդենէ հեթանոսաց. զորոյ արդ զտէրութիւն ունի շնորհօքն այ Թագաւորն Հայոց։

Յերկրին Ասորւոց բնակեն զանազան ազգք, այսինքն Յոյնք, Հայք, Յակոբիկք, Նեստորականք և Սարակինոսք։ Այն անդ և այլ քրիստոնեայ ազգք, այսինքն Ասորիք և Մառոնիք. Ասորիք ունին զարարողութիւն Յունաց, և եղեն յերկար ժամանակս հնազանդ սրբոյ հռոմէական եկեղեցւոյ. լեզու խօսին արաբացի, այլ զպաշտամունս եկեղեցւոյ կատարեն յունական տառիւք։ Իսկ Մառոնիք ունին զարարողութիւն Յակոբիկեանց, և վարեն զլեզու և զնշանագիրս արաբացւոց. և բնակեն շուրջ զլերամբ Լիբանանու և 'ի կողմանս Երուսաղէմի. են քաջ աղեղնաւորք, և ապրին երկրագործութեամբ։ Ասորիք բազում են, Մառոնիք սակաւաւորք։

Երկայնութիւն թագաւորութեան երկրին Ասորւոց քսան աւուրց գնացիւք վճարի. իսկ լայնութիւն աւուրբք հնգօք, և 'ի տեղւոջ ուրեք նուազիւք, ըստ որում անապատն Արաբիոյ և ծովն յոնիական հեռագոյն կամ մերձագոյն յարին։

## ԳԼՈՒԽ ԺԸ

Յաղագս տէրութեան Սարակինոսաց։

Որպէս յաւետարանի գտանի, զի 'ի ժամանակի ծննդեան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ինքնակալն հռոմայեցւոց Օգոստոս կայսր ունէր զմիահեծան տէրութիւն ամենայն աշխարհի. այլ զկնի թագաւոր ոմն Պարսից Խոսորասաթ անուն եղև առաջին վտարանջող յինքնակալութենէ հռոմայեցւոց, և ետ անուանել զինքն ինքնակալ Ասիոյ։ Սա գրաւեաց զտէրութիւն Պարսից, Մարաց, Հայոց և քաղդէացւոց. և այնչափ մեծացաւ իշխանութիւն նորա, զի բռնութեամբ կորզեաց զայն աշխարհս բոլորովին 'ի ձեռաց հռոմէական կայսեր. և տևեաց այս տէրութիւն թագաւորութեան Պարսից զամս երեքհարիւր քսան և ինն։ Իսկ յետոյ Սարակինոսք բարձին 'ի նոցանէ զինքնակալութիւն Ասիոյ. որպէս

'ի ստորև յայտնագոյն ցուցցի։ Յամի տեառն վեցհարիւր քսան և երկու Սարակինոսք մտին 'ի թագաւորութիւն Պարսից, և առին պատերազմաւ զբազմահարուստ քաղաքն Դամասկացւոց 'ի ձեռաց Յունաց՝ զոր նոցա կալեալ էր ընդ ժամանակս ձիգս․ և ապա 'ի սուղ ժամանակի գրաւեցին զթագաւորութիւն Պարսից։ Յետ այնորիկ պաշարեցին զմեծ քաղաքն Անտիոքայ, յորում կային Յոյնք զայնու ժամանակաւ։ Կայսրն Հերակլ Օգոստոս՝ ինքնակալն տէրութեան հռոմայեցւոց՝ իբրև լուաւ զայս, առաքեաց Յունաց օգնականութիւն մեծ, որպէս զի պաշտպանեսցէ քաղաքին ընդդէմ Սարակինոսաց։ Իսկ իբրև եկին զօրք Հերակլի կայսեր 'ի դաշտ ուրեք՝ Պոսսենէ անուանեալ, և Սարակինոսք 'ի հանդիպոյ ճակատեցան, եղև մարտ սաստիկ յոյժ, և ահագին մաքառումն 'ի մէջ նոցա․ այլ 'ի վախճանի զօրացան հագարացիք, և 'ի բախման անդ անհամար եղև բազմութիւն մարտկաց անկելոց․ զի և ցարդ երևին անդ յաճախութիւնք ոսկերաց դիականց․ և այնպէս հարկ եղև Յունաց պատսպարելոց 'ի քաղաքի՝ առ յոյժ երկիւղի տալ զԱնտիոք 'ի ձեռս Սարակինոսաց պէսպէս դաշամբք և ուխտիւք։

Անտի յառաջ խաղացեալ յաղթականացն՝ մտին 'ի Կիլիկիա, 'ի Կապադովկիա, 'ի Լիկայոնիա գաւառս ճոխս․ և 'ի սակաւ աւուրս արկին զնոսա ընդ տէրութեամբ իւրեանց․ զի ոչ ոք կարէր զդէմ ունել զօրութեան նոցա․ ուստի եղև նոցա փքանալ յոյժ ամբարտաւանութեամբ, մինչև կազմեցին և ցռկանաւս հանդերձ բազմութեամբ այլոց նաւաց, և բացին առագաստս դէպ 'ի Կոստանդինուպօլիս։ Այլ նախ իջին 'ի Կիպրոս, և առին զմեծ քաղաքն այնր թագաւորութեան զկոչեցեալն Կոստանդիա, ուր էր գերեզման սրբոյն Բառնաբայ առաքելոյ․ և յաւարի առեալ զանբաւ մեծութիւնս քաղաքին, և գերեալ զանթիւ ամբոխս, հիմնայատակ արարին զտեղին, մինչև անբնակ լինել յայնմ հետէ։ Ապա դիմեալ 'ի Հռոդոս կղզի, և յայլ բազում կղզիս հռոմայեցւոց, աւար հարին, և առին գերի բազում։

Յետ ամենայնի խաղացին 'ի վերայ Կոստանդինու-

պօլսոյ, և պաշարեցին զմեծաշէն քաղաքն 'ի ցամաքէ և 'ի ծովէ ։ Իսկ քրիստոնէից տեսեալ զայնչափ գումարտակ թշնամեաց՝ զահի զերկիւղի հարան յոյժ յոյժ, և խոնարհութեամբ ողորմութիւն խնդրէին 'ի տեառնէ․ և ահա յաջողեցաւ յակնարկութենէն ա̃յ․ զի թէպէտ և ժամանակն էր ամառնային, և ծովն անհողմութեամբ անշարժ կայր յալեաց յանկարծակի յարեաւ փոթորիկ ահագին, որ զթշնամեացն ցրուկանաւս և զամենայն լաստափայտս ծովասոյզ արար, և ոչ ոք յեղելոցն 'ի նոսա ապրեցաւ․ զոր տեսեալ այլոց՝ անդէն վաղվաղակի մեկնեցան 'ի փախուստ յետս ընդ կրունկն ։ Իսկ քրիստոնէից տեսեալ զանձինս ձողոպրեալ ողորմութեամբն Քրիստոսի՝ ուրախութեամբ մեծաւ կարգեցին զօրն զայն 'ի տօն տարեկան 'ի փառս փրկչին յաւէժաբար․ որ և ցայսօր կատարի յամենայն քրիստոնէից կողմանցն այնոցիկ ջերմեռանդն հանդիսիւ ։

Իսկ հագարացիքն առ ժամանակ մի դադարեալ 'ի հանգիստ, յետ այնորիկ բազմաձեռն զօր ժողովելով՝ խորհեցան յարձակիլ 'ի վերայ թագաւորութեան Պարսից․ և նախ միջամուխ եղեն 'ի թագաւորութիւն Միջագետաց․ ապա դիմեցին 'ի թագաւորութիւն քաղդէացւոց, որ էր ընդ տէրութեամբ Պարսից արքայի, որ չէր ձեռնհաս զդէմ ունել Սարակինոսաց․ ուստի 'ի գլուխ հանին զամենայն ուխտ սըրտից իւրեանց 'ի վերայ երկրին այնորիկ ։ Իսկ թագաւորն Պարսից Եսկերօթ (Յազկերտ) անունն զահի հարեալ անկանիլ ընդ լծով իշխանութեան Սարակինոսաց՝ դեսպանս արձակեաց 'ի նահանգս և 'ի թագաւորութիւնս, որք էին շուրջ զգետովն Փիսոն, և ժտեաց օգնականութիւն առ 'ի նոցանէ, խոստանալով որոց գայցեն՝ մեծամեծ թոշակս և պատիւս ։ Արդ 'ի թագաւորութենէ Թուրքաստանու՝ որ առաւել մերձ էր 'ի թագաւորութիւն Պարսից՝ ժողովեցան իբրու վեց հազար արանց, որ կոչէին յայնժամ Թուրքինեանք (կամ Թիւրքմէնք կամ Թորգոմեանք), և յուղի անկեալ ձեռն տալ արքային Պարսից, դիմեցին և անցին ընդ գետն Փիսոն ։ Եւ է նոցա այսպիսի սովորութի, զի յորժամ երթան յմ և է, ընդ իւրեանս

տանին զդստերս և զկանայս, որ ոչն կարեն արագ գնալ, այլ աւուր աւուր սակաւ գնացս առնեն։ Իսկ Սարակինոսք՝ որ էին ՚ի Թագաւորութէ քաղդէացւոց, որում տիրեցին ըստ ասացելոցս, խնդացեալ՝ զի եթէ զօրք Թուրքաց և Պարսից ՚ի մի վայր եկեացեն, չկարիցեն ՚ի գլուխ հանել զկամս իւրեանց, խորհուրդ արարեալ աջողագոյն՝ փութան յարձակիլ ՚ի վերայ Պարսից արքային, մինչչև հասեալ իցէ նոցա օգնականութիւն ուստեք։ Եւ Թագաւորն Պարսից՝ որ անկարանայրն խուսափել ՚ի կռուոյն, իւրով ազգաւ ել ընդ առաջ Սարակինոսաց. և ՚ի լինել մարտի մօտ ՚ի քաղաքն Մարգայ (կամ Մարաղայ), սաստիկ մաքառումն եղև ՚ի մէջ նոցա, և անկան յերկուց կողմանց անթիւ մարտիկք։ Այլ ՚ի վախճանի թիկունս դարձուցին Պարսք, և Սարակինոսք արիաբար զհետ մտեալ՝ հարին սպանին ընդ այլս և զարքայն Պարսից, և տարան զյաղթութիւն յամի 632։

Արդ իբրև մեռաւ արքայն Պարսից ըստ այսմ օրինակի, որդիքն Հագարու արկին ընդ լծով զԹագաւորութին Պարսից և զայլս յոգունս, և կացուցին զմի տէրութիւն, և ինքնակալ ընտրեցին իւրեանց յազգէ Մահմէտի, և կոչեցին զնա Խալիֆա, և սահմանեցին՝ զի աթոռ նորա իցէ ՚ի Բաղտատ մեծահարուստ քաղաքի. իսկ յիւրաքանչիւր այլ թագաւորութիւնս, զորս նուաճեալ էր հագարացւոց, կարգեցին մի մի տէր, զոր Սուլդան անուանեցին։ Այնուհետև առին և զայլ քաղաքս և զաւանս, և կալան զմեծն Ասիա ողջոյն, բաց ՚ի թագաւորութենէն Ափխազաց՝ որ ՚ի Վիրս, և բաց ՚ի գաւառէ անտի թագաւորութեան Հայոց, որ ռամկօրէն կոչի Հալօյէն։ Այս երկու նահանգք ընդդէմ կալան Սարակինոսաց, և ոչ կամեցան բնաւ հպատակիլ նոցա. և այնպէս գտան ապաստան և պատսպարան ամենայն քրիստոնէից, զորս հալածէին Սարակինոսք՝ ստիպելով ըզնոսա հնազանդիլ օրինաց Մահմէտի։

Իսկ վասն Թուրքինեանց նշանակելոց ՚ի վեր անդր, որ դէմ եդեալ էին ձեռնտու լինել արքային Պարսից, համառօտիւ ունիմք ասել ինչ. որպէս զի պատմութիւն նոցա որ զկնի դիւրիմաց գտանիցի։ Արդ այս

այս Թուրքինեանք նախաասացեալք հասին մինչև յերկիր ինչ, որ ասի Խորասան, և անդ իմացան՝ թէ որպէս արքայն Պարսից սպանաւ 'ի ճակատու. վասն որոյ կամեցան այլ ևս յառաջ խաղալ: Բայց լաւ համարեալ ապաստան լինել 'ի Խորասան՝ եդին 'ի մտի թէ կարող են ունել և պահել զայն յերեսաց Սարակինոսաց: Զայս տեսեալ և Սարակինոսաց՝ գումարեցին զօր բազում 'ի նուաճել ամենայն յեղանակօք զԹուրքինեանս: Այլ իբրև տեսին Թուրքինեանք զանթիւ բազմութիւն Սարակինոսաց, յերկուացեալք ընդ կռուին՝ պատգամաւորս յղեցին առ խալիֆայն, յանձն առեալ հնազանդ լինել հաճոյից նորա և հրամանաց, և աղաչեցին պահպանել զինքեանս ընդ տէրութեամբ իւրով:

Այս պատգամ հաճոյ եղև Սարակինոսաց. և այսպէս ընկալան զնոսա, և ետուն նոցա բնակել յայլ երկիր, ուր չիցէ երկիւղ ապստամբութեան. և եդին 'ի վերայ նոցա տարեկան հարկ վճարելի տէրութեան, և այլ ևս բազում ծառայութիւնս: Եւ այսպէս Թուրքինեանք բազում ժամանակս մնացին ընդ լծով Սարակինոսաց, մինչև թագաւորութիւնք Պարսից, Մարաց և քաղդէացւոց դարձան 'ի ձեռն Մահմէտի: Յետ այնորիկ խալիֆայն ետ կոչել առ ինքն զծերս Թուրքինեանց, և ամոքեաց զնոսա ընդունել զօրէնս և զդէն Մահմէտի, և գուն գործել զի զնոյն առնիցեն այլ ամենայն Թուրքինեանք, խոստանալով նոցա շնորհս և պատիւս, եթէ յայսմ սակի հնազանդեսցին կամաց իւրոց:

Եւ քանզի Թուրքինեանք չունէին բնաւ օրէնս ինչ, դիւրաւ հաւանեցան հրամանի խալիֆային, և եղեն ամենեքին Սարակինոսք: Եւ յառաջել ժամանակի այնչափ փոյթ տարան այդմ, զի 'ի ձեռն Մահմէտի յարեցան վաթսուն և չորս ազինք Թուրքինեանց, և դարձան ա̃մ Թուրքինեանք 'ի կրօնս Սարակինոսաց, բաց յերկուց և եթ ազգաց, որք զատան որոշեցան յայլոց ամենեցունց դարձելոց: Յայնմ հետէ Սարակինոսք սկսան սիրել զԹուրքինեանս, և առնէին նոցա շնորհս և բարիս. ուստի բազմացան ճոխութեամբ և թուով. քանզի գիտացին ընդ տէրու-

թեամբ Սարակինոսաց անցանել խորագիտութեամբ մինչև գտին տեղի և առիթ վտարանջութեան, զոր զրուամբ ածեալ՝ առին զտէրութիւն 'ի ձեռաց Սարակինոսաց, որպէս տեսցի 'ի ստորև։

Սարակինոսք թագաւորեցին յԱսիա զամս հարիւր իննսունևութ նախ քան զկորուսանել զտէրութիւն. այլ յարեաւ խռովութիւն իմն մեծ 'ի մէջ նոցա, մինչ զի սուլդանք և այլ իշխանք աշխարհաց՝ որ պարտական էին հնազանդիլ խալիֆայի, սկսան ապստամբիլ 'ի նմանէ. յոյր սակս իշխանութիւն Սարակինոսաց կարի յոյժ նուազեցաւ։ Յայնմ ժամանակի նստէր կայսր 'ի Կոստանդինուպօլիս քաջազօր Դիժէն անուն. սա արիաբար և հզօրապէս սկսաւ յարձակիլ 'ի վերայ Սարակինոսաց, և յետս էառ բազում քաղաքս և ամրոցս անկեալս ընդ ձեռամբ Սարակինոսաց յաւուրս Հերակլի կայսեր. և բաց յայլոցն ազատեաց և զԱնտիոք քաղաք և զամուր քաղաքս Կիլիկիոյ, որ աշխարհ Հայոց կոչի այժմ. որպէս և զմասն թագաւորութե Միջագետաց դարձոյց 'ի տէրութի քրիստոնէից։ Իսկ այլ թագաւորութիւնք Ասիոյ մնացին ընդ տէրութեամբ Սարակինոսաց, և կալան զայն մինչև Թուրքինեանք տիրեցին այնց տեղեաց տէրութեան. որպէս տեսցի յայտնագոյնս զկնի։

Յամի 1051 սկսան Թուրքինեանք նախ տիրել յԱսիա, իմա ըստ օրինակիս ըստ այսմիկ։ Զի յորժամ Թուրքինեանք լցան հարստութեամբք և բազմացան յոյժ թուով, տեսեալ զերկպառակութիւնն՝ որ զօրանայր 'ի մէջ Սարակինոսաց, զմտաւ ածին՝ թէ կարող են հեշտեաւ գրաւել զինքնակալութիւն նոցա. ուստի ընտրեցին 'ի վերայ իւրեանց թագաւոր և տէր. քանզի յառաջագոյն ոչ երբէք ունէին յազգէ իւրեանց զոք տէր հանրական կամ ազգային. և առաջին տէրն նոցա կոչեցաւ Սատըգ։ Արդ այն ինչ եղև նոցա տէր ունել, քաջութք յարձակեցան 'ի վերայ Սարակինոսաց, և 'ի սուղ ժամանակի ստացան զամենայն երկիր մեծին Ասիոյ։ Բայց ոչ ինչ նեղութիւն կամ ծանրութիւն ետուն խալիֆայի։ Այլ յորժամ Թուրքինեանք գրաւեցին զտէրութի աշխարհին Ասիոյ, խալիֆայն առ ահի առաւել

քան առ սիրոյ՝ կամելով հաճել զնոսա յամենայնի, զնա ինքն զՍատրդ տէրն նոցա կարգեաց լինել ինքնակալ Ասիոյ համօրէն ։

Բայց յետ անցանելոյ սակաւ միջոցի ժամանակի ելից զաւուրս իւր Սատրդ և մեռաւ. և պայազատեաց զնա մին յորդւոց նորա, որ կոչեցաւ Տողրիսա (այն է Տուղրիլ խան կամ Տուղրիլ շահ). և սա սկսաւ մարտ յարուցանել ընդդէմ կայսեր Յունաց, և եառ զբազում տեղիս նորա և զամուրս ։ Իսկ առաքեաց զօմն յազգականաց իւրոց Արտոտ անուն, յարձակիլ 'ի թագաւորութիւնն Միջագետաց, և թողացոյց նմա առնել զոր ինչ կարող իցէ ընդդէմ Յունաց ։ Ուստի սա ինքն Արտոտ մեծաւ ամբոխիւ ճանապարհ արարեալ եկն պաշարեաց զքաղաքն Ուռհա, զոր եառ անաշխատ ։ Յետոյ դիմեաց յայլ երկիրս և 'ի տեղիս, և զբովանդակ Միջագետս արկ ընդ տէրութեամբ իւրով. և զաթոռ իւր եդ 'ի քաղաքն Մերտին, և ետ ամենեցուն կոչել զինքն սուլդան ։

Յայնմ ժամանակի մեռաւ Տողրիսա ինքնակալ Ասիոյ. և յաջորդեաց նմին որդի նորա Ասպասալէմ անուն. որոյ էր եղբօրորդի մի Սուլէյման անուամբ, որ էր քաջարի 'ի զէնս, և շատ ծառայեալ էր հօր իւրում. և զսա զօրու ծանու առաքեաց 'ի Կապադովկիա, և թողացոյց նմա զոր ինչ կարիցէ 'ի ձեռս բերել 'ի Յունաց ։ Արդ չոգաւ և եառ Սուլէյման զյոլով քաղաքս թագաւորութեան երկրին Թուրքաց, և զտէրութիւն նորին ողջոյն արկ ընդ իւրով տէրութեամբ, և ետ զինքն կոչել սուլդան. և փոխեալ զանուն իւր՝ ետ կոչել Սուլէմանշա (Սիւլէյման շահ). և զսա յիշատակեն պատմութիւնք Պասսադիոսի Գոդեփրետայ յաղագս Պողիոնի. քանզի նա եղև առաջին՝ որ պատերազմաւ ընդդէմ եկաց քրիստոնէից ։

Ապա մեռաւ Ասպալէմ ինքնակալ Թուրքաց. և յաջորդեաց նմա որդի նորին Մէլիք շահ. սա յղեաց զսուլդանն Միջագետաց Արտոտ, և զՍուլէյման սուլդան երկրին Թուրքաց 'ի պաշարել զԱնտիոք քաղաք. որ յետ սակաւուց առին զայն. քանզի քաղաքն մեծ էր յոյժ, և սակաւք էին 'ի նմա զօրք 'ի

պաշտպանել և յընդդէմ կալ Սարակինոսաց . և այսու օրինակաւ արտաքս վտարեցան Յոյնք յամենայն Ասիոյ յերեսաց Թշնամեաց քրիստոնէութեան ։

Յետ այսորիկ մեռաւ Մէլիք շահ ինքնակալ Թուրքաց թողեալ երկուս որդիս, և պայազատեաց զիշխանութիւն հօրն անդրանիկն, որ կոչիւր Պելքիարուխ . այլ եղբայր նորա բռնագոյն քան զնա՝ կալաւ զմեծ մասն ինքնակալութեանն ։ Եւ յայնմ ժամանակի՝ յորում Պասսագիոս Գոդեփրիտ 'ի Պուղիոնէ էանց ընդ երկիր Թուրքաց, Պելքիարուխ էր ինքնակալ Պարսից, և Սուլէյման էր սուլդան երկրին Թուրքաց, որ բազում յարձակմունս արար 'ի վերայ քրիստոնէից նախ քան զանցանելն 'ի Թագաւորութիւն երկրին այնորիկ ։ Իսկ յորժամ քրիստոնեայք անցին 'ի Թագաւորութիւն Թուրքաց, և պաշարեցին զքաղաքն Անտիոքայ, զայն լուեալ ինքնակալին Թուրքաց՝ առաքեաց յօգնութիւն այնր քաղաքի զօրն 'ի զօրավարաց իւրոց Կորպաղատ անուն անթիւ բազմութեամբ պատերազմողաց . այլ մինչև եկեալ նորա 'ի Թիկունս, քրիստոնեայք կալաւ առին զքաղաքն . ուստի պաշարեցին զայն յամենայն կողմանց, և այնպէս քրիստոնեայք՝ որ յառաջին պաշարիչք էին, պաշարեցան ։ Ապա քրիստոնեայք ելին արտաքս 'ի քաղաքէ՝ կարգեալք խմբովք և ճակատուք . և մղեցին մարտ ընդդէմ Սարակինոսաց, և խորտակեցին մաշեցին զամենեսին իբրև զմղեղ յակնարկութենէն այ՟ . իսկ փախստեայքն դարձան 'ի Թագաւորութիւն Պարսից, և գտին զՊելքիարուխ զտէրն իւրեանց վճարեալ 'ի կենաց . և եղբայր նորա կամէր յաջորդել նմա, և ունել զինքնակալութիւնն ։ Բայց ոմանք յաստխացն նորա 'ի վերայ դիմեալ յօշյօշ արարին զնա . քանզի և ոչ յետոյ կարացին միաբանիլ յընտրութիւն ինքնակալի, կամ հանրական պետի 'ի վերայ իւրեանց . այլ երկպառակեալ կռուէին ընդ միմեանս ։

Զայս տեսեալ Վրաց, և Հայոց մեծին Հայաստան աշխարհի՝ 'ի վերայ յարձակեցան Թուրքաց արիաբար, և քաջապէս և փախուցին զնոսա 'ի բովանդակ իշխանութենէ . ուստի չոքան կանամբք և որդւովք

բնակել 'ի տէրութիւն Թուրքաց աշխարհին. և այնպէս յոյժ զօրացաւ իշխանութիւն սուլդանին երկրին այնորիկ, մինչև հզօրագոյն լինել քան զամենեսեան. և մինչև 'ի գալուստ Թաթարաց կալաւ խաղաղութեամբ զթագաւորութիւն իւր. յորոց յետոյ ուրեմն պարտեցաւ, որպէս տեսցուք զկնի ։

Ի թագաւորութեան Խորազմեայց կային ժողովուրդք ինչ 'ի զէն աջողակք, որ միշտ բնակէին վրանօք 'ի դաշտս, և հովիւք էին անդէոց ։ Սոցա լուեալ վասն թագաւորութեան Պարսից, զի մնացեալ էին անթագաւոր, անտէրունչ և անօգնական, խորհեցան՝ թէ դիւրաւ կարեն ունել զայն. վասն որոյ խորհուրդ արարեալ 'ի մէջ իւրեանց՝ ընտրեցին զոմն առաջնորդ և տէր, որ կոչէր Ջալալատին. և անյապաղ միաբան դիմեալ՝ մտին 'ի թագաւորութիւն Պարսից, և չոքան մինչև 'ի քաղաքն Խորոսի առանց դիմակացութեան ուրուք. և անդ հաստատեալ զկայս իւրեանց, զնա ինքն զՋալալատին տէրն իւրեանց պսակեցին ինքնակալ Ասիոյ. քանզի եդին 'ի մտի՝ թէ նոյնպէս դիւրաւ նուաճեն զայլ թագաւորութիւնս Ասիոյ, որպէս արարին ընդ թագաւորութիւնն Պարսից, անտէրունչ գտեալ զայն ։

Այս Խորազմեայք եդուն զանձինս 'ի հանգիստ և 'ի զբօսանս. և լցեալք մեծութեամբ թագաւորութեան Պարսից՝ փքացան հպարտութեամբ մեծաւ, ուստի խաղացեալ դիմեցին 'ի թագաւորութիւն Թուրքաց՝ խորհելով տիրել այնմ. այլ սուլդանն Թուրքաց Ալատին անուն՝ ժողովեալ զզօրս իւր՝ ընդ առաջ ել Խորազմեայց 'ի մուտս թագաւորութեան իւրոյ. և սկսաւ լինել պատերազմ ահագին 'ի մէջ նոցա. այլ յետոյ ուրեմն թիկունս դարձուցին Խորազմեայք, և կորուսին զպետն և զինքնակալն իւրեանց, որ սպանաւ 'ի ճակատու անդ ։ Իսկ ինքեանք մազապուր փախուցեալք՝ ժողովեցան 'ի դաշտն Ուռհայու, խորհել թէ զինչ այնուհետև առնիցեն. վասն որոյ մտին 'ի թագաւորութիւն երկրին Ասորւոց, զոր յայնժամ կառավարէր տիկին ոմն. վասն որոյ և կարծէին հեշտեաւ 'ի բուռն առնուլ զայն թագաւորութիւն ։ Այլ ազնուական տիկինն

այն ետ հաւաքել զզօրս իւր 'ի Հալէպ քաղաք, և զդէմ կալաւ Խորազմեայց. և եղև ճակատ մարտի առ Եփրատ գետով. և անդ ևս դարձեալ 'ի պարտութիւն մատնեցան Խորազմեայք, և դարձան 'ի փախուստ մինչև յանապատն Արաբիոյ: Ապա անցին ըստ գետն Եփրատ առ Կաքաւ բերդաւ, և մտին յերկիրս ասորեստանեայց, և չոգան մինչև 'ի գաւառն Պաղեստինոյ, որ 'ի Թագաւորութեան Երուսաղէմացւոց. անդ ոչ սակաւ զեան ետուն քրիստոնէից, որպէս լիով գտանի 'ի պատմութիւնս Գոդեփրետայ Պասսագի: Այլ 'ի վախճանի այս ազգ Խորազմեայց յոչինչ դարձաւ 'ի սուղ ժամանակի. զի որովհետև այդ Խորազմիք չկամէին հնազանդիլ աւագաց իւրեանց, զատուցեալ լինէին 'ի խումբս խումբս ամբոխից. և երթային ոմանք առ սուլդանն Դամասկոսի, ոմանք առ սուլդանն Համսայ, այլք առ սուլդանն Համայ, և այլք առ այլ սուլդանս Թագաւորութեն ասորեստանեայց, որք յայնմ ժամանակի հինգ էին թուով. և ծառայէին նոցա որպէս Թոշակաւոր:

Իսկ առաջնորդն Խորազմեայց՝ որ կոչիւր Սարդատ, իբրև ետես զինքն այնպէս թողեալ լքեալ յազգէ իւրմէ, գնաց առ սուլդանն Բաբելոնի, և յանձն արար զինքն և զիւրսն 'ի հաճոյս և 'ի հրամանս նորա: Ուստի սուլդանն սիրով ընկալաւ զԽորազմիս, և բաժանեաց զնոսա 'ի մէջ զօրաց իւրոց. զի ոչ կամէր՝ թէ 'ի միասին լինիցին. և զիշխանն Խորազմեայց մեծապէս պատուասիրեաց, և ետ նմա մեծամեծ տուրս և հասս. և մինչև ցօրս ցայս ժառանգք այնր իշխանի պատուեալ են 'ի Բաբելոնի. և ահա 'ի ձեռն Խորազմեայց մեծացաւ յոյժ իշխանութիւն սուլդանին Բաբելոնի, որ յառաջ քան զգալուստ նոցա փոքր էր և նուաստ: Իսկ Խորազմեայք ըստ հաճոյս բաժանեալք՝ յետոյ ուրեմն յոչինչ դարձան, և այնպէս աւերեցաւ ազգն Խորազմեայց. և յետ սուղ ժամանակի ապա սկսան Թաթարք տիրել Ասիա. որպէս լիագոյն ասասցի 'ի ստորև:

# ԳԼՈՒԽ ԺԵ.

*Ցաղագս աշխարհին՝ ուր յառաջագոյն բնակէին Թաթարք։*

*Աշխարհն այն, յորում կանխաւ բնակէին Թաթարք, է յայնկոյս մեծի լերինն Բելգենայ, որ յիշի 'ի պատմութեան Աղէքսանդրի. արդ յայնմ նահանգի բնակէին Թաթարք՝ որպէս մարդիկ անասնակերպ. ոչ գիր ունէին, և ոչ հաւատս. Ջոկս արածէին կենդանեաց, և տեղւոջէ 'ի տեղի չու առնէին 'ի խնդիր արօտոյ անդեայց. չէին բաւական 'ի հրահանգս զինուց, այլ յամենեցունց արհամարհեալ էին, հարկատու լինելով բոլորից։ Բոլոր ազգք էին Թաթարաց 'ի վաղնջուց հետէ, որք հասարակ անուամբ Մողոլք կոչէին. և այնչափ բազմացան, մինչև յեօթն գլխաւոր ազինս բաժանեցան, որք և առաւել պատուական համարեցան 'ի մէջ նոցա։*

*Առաջինն ազգացս Թաթարաց կոչի Թաթար, որ է անուն առեալ 'ի գաւառէ բնակութեան նոցա 'ի վաղուց. երկրորդն կոչի Տանկուտ. երրորդն Կունատ. չորրորդն Ջալիս. հինգերորդն Սոնիք. վեցերորդն Մոնգի. եօթներորդն Գեպաթ։ Եւ յորժամ այս եօթն ազգք Թաթարաց կային ընդ հպատակութեամբ մերձակայ դրացեաց ըստ նախաճառելոցս, դէպ եղև զի ծեր ոմն աղքատ՝ շինող փոսից, տեսիլ ետես 'ի քուն, այսինքն զայր մի զօրական բոլորովին սպիտակ, սիրելի, հեծեալ 'ի ձի սպիտակ. որ յանուանէ կոչեաց զնա, և ասէ. Կանգիէ (Չինկիզ) կամք անմահին այ է, զի դու լիցիս իշխան վերակացու (կամ տնօրէն և վարիչ) Թաթարաց, և տէր 'ի վերայ ազգայս Մողոլից. և քև ազատեսցին 'ի ծառայութենէ սահմանակցաց, յորում յերկարեցին, կրելով վէճս և հարստահարութիւնս 'ի տիրողաց մերձաւորաց. և և զհարկս՝ զոր տային նոցա, ինքեանք առցեն 'ի նոցանէ։ Կանգիոս (Չինկիզ) լցաւ մեծաւ զուարթութեամբ 'ի լսելն զպատգամն այ, և պատմեաց ամենեցուն զտեսիլն՝ զոր ետես. բայց առաջնորդք և մեծա-*

մեծք նոցա չկամեցան հաւատալ տեսլեանս, մանաւանդ ըստ իմիք ծիծաղեցան զծերունեաւ: Իսկ 'ի յաջորդ գիշերի նոյն առաջնորդք տեսին զսպիտակ զինուորն և զտեսիլն, որպէս ծերն Կանգիոս (Չինկիզ) պատմեալ էր ամենեցուն. և պատուէր հրամանի տուաւ նոցա 'ի կողմանէ ա̃յ անմահի, զի հնազանդ լինիցին Կանգիոսի, և տացեն պահել ամենեցուն զհրամանս նորա: Ուստի եօթն այն առաջնորդք և մեծամեծք եօթնեակ ազգաց Թաթարաց համահաւաքեալ զժողովուրդս՝ ետուն նոցա հնազանդիլ Կանգիոսի (Չինկիզայ) որպէս 'ի բնէ տեառն իւրեանց:

Ապա զաթոռ նորա հաստատեցին 'ի միջի իւրեանց, և սփռեալ զօթոց ինչ (կամ գորգ հիւսեալ) սևագոյն յոյժ 'ի վերայ գետնոյ՝ նստուցին 'ի վերայ նորա զՉինկիզ (կամ զԿանգիոս). և եօթն առաջնորդք մեծամեծք ամբարձին զնա, և եդին 'ի վերայ աթոռոյ մեծաւ ցնծութ̃ և աղաղակաւ, և կոչեցին զնա Խան՝ առաջին ինքնակալ, և արարին նմա յարգութիւն ծնրադրութեամբ իբրև ինքնակալի և տեառն: Արդ յաղագս այսպիսի հանդիսի՝ զոր արարին Թաթարք առաջնոյ ինքնակալի և տեառն իւրեանց, և վասն օթոցին (հիւսելոյ) մի՛ ոք զարմասցի. զի թերևս զայլ գեղեցիկ պաստառ ոչ ունէին. կամ գուցէ այնչափ տխմար էին և անշուք, զի զայլ լաւագոյն չունէին կամ ոչ գիտէին առնել:

Այլ վասն ներկայ ժամանակիս կարող է ոք զարմանալ, զի յորժամ նոյն Թաթարք զբազում թագաւորութիւնս ստացան և զանբաւ մեծութիւնս, իբր զի 'ի ձեռին ունէին զտէրութիւն Ասիոյ և զճոխութիւն, և մինչև 'ի սահմանս Հունգարաց էն տիրեալ, ոչ վասն այսորիկ իսկ կամեցան թողուլ իւիք զհին սովորութ̃ կամ զկերպ իւրեանց. մանաւանդ թէ պէտք են, զի հաստատութեամբ ինքնակալին Թաթարաց բոլորովին պահեսցի այն կարգ, զոր կալան նախնիք իւրեանց: Եւ ես երկիցս անձամբ առաջիկայ գտայ այսմ հաստատութեան առ 'ի յինքնակալէ: Այլ մեք յառաջիկայսն դարձցուք:

Չինկիզ խան՝ որ եղև ինքնակալ հաւանութեամբ

հասարակաց և հաճութեամբ ամենայն Թաթարաց, մինչև բուռն հարեալ յիրս իւր՝ փորձել կամեցաւ, եթէ Թաթարք ամենայն հնազանդի՞ն իւրեան հաւատարմութեամբ. վասն որոյ եհան պատուէրս ինչ պահել ամենեցուն: Առաջին պատուէրն այս էր, զի ամենայն Թաթարք հաւատասցեն և հնազանդեսցին Այ անմահի, որ ակնարկութեամբ ստացաւ զպատիւ ինքնակալութեան: Զայս պատուէր պահեցին Թաթարք. և յայնմ ժամանակէ հետէ սկսան կարդալ զԱծ. և մինչև ցայսօր յամ 'ի գործս իւրեանց Թաթարք կարդան զանունն տեառն: Երկրորդ հրաման ետ, զի 'ի վերայ իւրաքանչիւր տասանց կարգեսցի մի ոստիկան, և 'ի վերայ հազարաց դիցի մի ոմն, և 'ի վերայ տասն հազարաց ոմն մի. և կոչեաց զբիւր մի զօրու՝ գունդ. և ևս հրաման ետ, զի եօթն առաջնորդք կամ զօրավարք լծցին 'ի վերայ եօթանց ազանց Թաթարաց, որ զամենայն աստիճան պատուոյ 'ի բաց եդեալ և հանապազ զայդ առնիցեն:

Արար և այլ պատուէր ահարկու և անհնարին. քանզի հրամայեաց եօթանց այն զօրավարաց Թաթարաց, զի իւրաքանչիւր 'ի նոցանէ ածցէ զանդրանիկ իւր, և ինքնին ձեռամբ իւրով հատցէ զգլուխն: Եւ թէպէտ այս հրաման երևէր անագորոյն և անօրէն, բայց ոչ ոք իշխեաց հակառակ կալ իւիք. վասն զի գիտէին՝ թէ նա տէր է Ածային տեսչութեամբ. վասն որոյ զոր ինչ պատուէր ետ ինքնակալն, անյապաղ կատարեցին:

Արդ յետ իմանալոյ Ճինկիզ խանի զսիրտ իւրոցն՝ տեսեալ թէ մահուչափ պատրաստ են հնազանդիլ իւրեան, օր սահմանեաց ամենեցուն՝ պատրաստ լինել 'ի պատերազմ: Արդ հեծելութիւն արարին Թաթարք նախ ընդդէմ մերձաւոր սահմանակցաց իւրեանց, և արկին զնոսա ընդ լծով. և զորս յառաջին տեարք էին նոցա, արկին 'ի յետին ծառայութի: Անդուստ յառաջ խաղաց Ճինկիզ խան ընդդէմ այլոց ազգաց բազմաց, և արագ արագ նուաճեաց զնոսա ընդ տէրութեա իւրով. քանզի զամենայն ինչ առնէր Ճինկիզ խան սակաւաձեռն գնդաւ, և աջողէր նմա ամենայն ինչ:

Դէպ եղև յաւուր միում, զի Չինկիզ խան արշաւէր սակաւ հեծելօք իւրովք, և ահա ընդ առաջ ելին նորա թշնամիք բազմութեամբ. և 'ի խոնիլ պատերազմի՝ այն ինչ ինքնակալն Չինկիզ խան պաշտպանէր զանձն իւր, երիվար նորա յոր աշտանակեալ էր՝ սպանաւ 'ի մարտի անդ։ Որբև տեսին Թաթարք զտէրն իւրեանց տապաստ անկեալ 'ի մէջ ճակատուց, լքան 'ի յուսոյ փրկութե̃, և թիկունս դարձուցեալ՝ ճողոպրեցին զանձինս 'ի ձեռաց թշնամեաց։ Իսկ նոքա առհասարակ զհետ պնդէին փախուցելոց փութով, ինչ ոչ գիտելով զգետնատարած անկումն թագաւորին։ Յայնժամ Չինկիզ խան 'ի վեր վազեաց, և թաքոյց զանձն 'ի մէջ թփոց՝ զերծանիլ 'ի վտանգէ մահու. և այն ինչ դարձեալքն 'ի կռուոյ 'ի դաշտ՝ դիակապուտ առնէին, և 'ի խնդիր լինէին թաքուցելոց, դէպ եղև՝ զի հաւ մի՝ որ 'ի բազմաց բու կոչի, եկեալ նստաւ 'ի վերայ թփոց՝ ընդ որովք ծածկեալ էր ինքնակալն. և խնդրակքն տեսին զայն հաւ 'ի թուփս նստեալ, և յայն սակս համարեցան՝ թէ չիք ոք անդ. և առանց 'ի խնդիր լինելոյ նորա՝ զոր խնդրէինն, մեկնեցան 'ի տեղւոջէն՝ ասելով յիւրեանս, եթէ լինէր ոք անդ թաքուցեալ՝ հաւն այն չնստէր բնաւ անդէն։

Ապա 'ի լռութեան գիշերոյ Չինկիզ խան առ երկիւղի թշնամեաց զանկոխ ճանապարհս գնալով եհաս առ իւրսն, և պատմեաց նոցա կարգաւ և ստուգութեամբ զոր ինչ անցք անցին ընդ նա։ Յայնժամ Թաթարք գոհութիւն մատուցին այ̃ անմահի. և հաւն այն՝ որ յետ այ̃ ազատարար կարծեցաւ Չինկիզ խանին, այնչափ 'ի յարգի եղև յետոյ առ նոսա, զի որ ունիցի զփետուր մի այնր թռչնոյ, երջանիկ զանձն վարկանի. և կրեն Թաթարք զայն փետուր մեծաւ պատուով 'ի վերայ գլխոց իւրեանց։ Իսկ ես վասն այն յիշեցի զայս բան յայսմ մատենի, որպէս զի յայտնի լիցի պատճառն, թէ ընդէ՞ր տանին Թաթարք փետուրս 'ի գլուխս իւրեանց։

Արդ Չինկիզ խան ինքնակալ ամենայն զաւառաց եղեալ, որ էին յայսկոյս բելգեան լերին, տիրեաց նոցին առանց անհանգարտութեան իրիք. մինչև ետես զայլ տեսիլ, որպէս զկնի ճառեսցի։ Այս մի լիցի

ումեք զարմանալ, զի չեդի 'ի պատմութեան աստ զժամանակն հաւաստի. զի թէպէտ և 'ի բազմաց խնդրեցի զհաւաստիս ստուգութեան, բայց չկարացի գտանել զոք, որ լիով տացէ ինձ տեղեկութիւն զայդմանէ: Այլ պատճառ զայն կարծեմ անգիտելի մնալոյ ստոյգ ժամանակի պատմութեանց, վասն զի 'ի սկզբանէ Թաթարք չունէին նշանագիրս. վասն որոյ ժամանակն և անցք իրաց անցանէին առանց նշանակելոյ յումեքէ, և այնպէս 'ի մոռացօնս լինէին:

# ԳԼՈՒԽ ԺԸ.

Յաղագս Ճինկիզ խանի նախկին ինքնակալի Թաթարաց:

Յետ նուաճելոյ Ճինկիզ խանի ընդ տէրութեամբ իւրով զամենայն թագաւորութիւնս և զգաւառս՝ որ էին շուրջ զԲելղեան լերամբ, 'ի գիշերի միում ետես զայլ տեսիլ. քանզի տեսանէր միւսանգամ զսպիտակ զօրականն որ ասէր ցնա. Ճինկիզ խան, կամք այ անմահին է, զի դու անցցես ընդ լեառն Բելղեան, և ընդ արևմուտս ուղղեսցես զընթացս քո, և զրաւեսցես զթագաւորութիւնս, զգաւառս և զգետինս, և ընդ ինքնակալութ՟ քով արկցես զբազում ազգս: Այլ զի հաւաստի լինիցիս թէ ասացեալքս յինէն՝ են 'ի կողմանէ այ անմահի, արի և գնա ազգաւ քով 'ի լեառն Բելղեան՝ 'ի տեղին, ուր ծովն կից է նմին. և անդ իջցես, և դէպ յարևելս ինն ծնրադրութեամբք ընկնիցս երկիր պագցես այ անմահի. և նա ինքն ամենակալն ճանապարհ ցուցցէ քեզ, որով դիւրաւ կարող լինիցիս անցանել զայնու լերամբ: Արդ 'ի տեսանել Ճինկիզ խանի զայն տեսիլ՝ յարեաւ խնդութ՟, և ոչ ումեք յերկուացաւ. վասն զի տեսիլն առաջին որպէս ճշմարտեալ՝ տայր նմա ստուգութիւն զայլոցն: Այսմ իրի վաղվաղակի ժողովեաց զիւրսն յամենայն կողմանց, և հրամանս ետ գալ զկնի իւր կանամբք և որդւովք և ամենայն ընչիւք իւրեանց. և այնպէս չոգան մինչև հասին 'ի տեղին՝ ուր ծովն մեծ և խոր կից էր ընդ լերինս, և չերևէր ինչ ճանապարհ կամ

անցք 'ի տեղւոջն ։ Անդէն վաղվաղակի Չինկիզ խան՝ որպէս հրամայեալ էր ինքեան յանմահէն այ, էջ յերիվարէն. զնոյն արարին և իւրքն առ հասարակ. և յարեւելս կոյս ծունր կրկնեալ, ընծիւցս երկիր պագանէին, և խնդրէին օգնականութիւն յամենակալ և յանմահն այ, զի ցուցցէ նոցա ճանապարհ և անցս գնալոյ ։ Արդ կացին յաղօթս զգիշերն զայն. և ընդ առաւօտն յարուցեալ տեսին, զի ծովն եօթն ոտնաչափ յետս ընկրկեալ էր 'ի լերանց, և թողեալ էր ճանապարհ լայն ։ Սքանչացան ընդ այն Թաթարք առ հասարակ 'ի տեսանել զիրսն, և գոհութիւն մատուցեալ այ անմահի ջերմ սրտիւ, անցին ընդ ճանապարհն՝ զոր գտին բացեալ, և ուղղեցին զգնացս իւրեանց յարեւմուտս կոյս ։

Այլ ըստ որում գտանի 'ի պատմութիւնս Թաթարաց, յետ անցանելոյ Չինկիզ խանի և Թաթարաց ընդ նախասացեալ լերինսն՝ կրեցին զնեղութիւն սովոյ և ծարաւոյ զաւուրս ինչ. վասն զի գտին զերկիր անապատ, և ջուրս դառինս և աղիս, զոր ոչ իւիք կարէին ըմպել, մինչև տեսին երկիր բարի, ուր հասին նոցա ամենայն կարեւորք առատապէս. և զաւուրս բազումս յամեաց Չինկիզ խան յայնմ բերրի երկրի ։ Այլ պատահեաց նմա յակնարկութենէն այ ծանր ինչ հիւանդութիւն, մինչև անյոյս լինել բժշկաց յառողջութենէ նորա ։ Ուստի Չինկիզ խան ինքնակալն Թաթարաց կոչեաց առաջի իւր զերկոտասանեսին որդիս իւր և խրատ ետ նոցա, զի լինիցին միշտ միաբանք և միախոհք. և ետ նոցա օրինակ այսպիսի. հրամայեաց՝ զի իւրաքանչիւր որդիքն բերցեն մի մի նետ. և յորժամ կային 'ի միասին ամենեքին, հրաման ետ աւագին, զի խորտակեսցէ զամենայնն 'ի մի խուրձ միանգամայն՝ եթէ կարող ինչ է. և նորա առեալ զերկոտասան նետսն՝ ջանացաւ խորտակել զնոսին, այլ չկարաց բնաւին. ապա ետ զնոսա երկրորդ որդւոյն և երրորդին, և այլոց մի ըստ միոջէ. այլ ոչ ոք կարաց խորտակել. յայնժամ հրամայեաց կրտսեր որդւոյն, զի ուրոյն ուրոյն առեալ զնետսն բաժանեալս՝ խորտակեսցէ մի առ մի. և նա հեշտեաւ խորտակեաց զամենայն ։ Յայնժամ դարձաւ Չինկիզ խան առ

որդիս իւր և ասէ ցնոսա։ Ընդէ՞ր, որդեակք իմ, չկարացիք բեկանել զնետս՝ զորս ետու ձեզ 'ի խորտակել. և նոքա ասեն։ Վասն, զի տէր, բազումք էին 'ի միասին։ Եւ ընդէ՞ր եբեկ զնոսին եղբայրն ձեր կրտսեր։ Վասն զի, տէր, ուրոյն ուրոյն էին բաժանեալ։ Եւ ասէ Ճինկիզ խան. Նոյնպէս լինիցի և ընդ ձեզ. ցորչափ լինիջիք մի սիրտ և մի ոգի, տևեսցէ տոկուն ինքնակալութիւն ձեր հանապազ. այլ ընդ բաժանել ձեր յիրերաց՝ փութով յոչինչ դարձցին տէրութիւնք ձեր։ Բազում և այլ բարի բարի օրինակս ետ Ճինկիզ խան, որ պահեցան առ Թաթարս, և ասին 'ի բարբառ նոցա Եասաք Ճինկիզ խանի, այսինքն սահմանք Ճինկիզ խանի։

Յետ այսորիկ մինչև մեռեալ՝ զիմաստնագոյնն և զլաւն յորդւոց իւրոց կացոյց տէր և պայազատ ինքնակալութեան, որում անուն էր Ուխադա (կամ Օքքօդա) խան։ Օ այսոսիկ վճարեալ հանդերձ խաղաղութեամբ Ճինկիզ խան. և որդի նորա Ուխադա խան եղաւ յաթոռ ինքնակալութեան հօր իւրոյ։ Բայց մինչև կնքեալ մեր զայս պատմութիւն, զայն ասասցուք, թէ որպէս առ Թաթարս 'ի յարգի է յոյժ իննեակ թիւն. այս է 'ի յիշատակ ինն ծնրադրութեանց, զոր արարին ա̃յ անմահի 'ի լեառն բելգեան, որպէս պատուիրեալ էր նոցա սպիտակ զօրականն, և լայնութեան ինն ոտնաչափու, ընդ որ անցին, զթիւն զայն բարեբաստիկ համարին։ Վասն որոյ որ ոք կամի յանդիման առնել ինչ տեառն Թաթարաց, պարտի մատուցանել ինն իրս, եթէ կամի՝ զի հաճոյ լինիցի ընծայն իւր. և շատ է թէ ինն անցեն իրքն մատուցեալք, ընծայն այն համարեալ լինի որպէս բարեբախտիկ և լաւ, և այս սովորութիւն մինչև ցայսօր պահի 'ի մէջ Թաթարաց։

## ԳԼՈՒԽ Ժ.

Յաղագս Ուխադայ խանի երկրորդ ինքնակալի Թաթարաց։

Ուխադա խան՝ որ յաջորդեաց հօր իւրում յինքնակալութեան, գտաւ այր հուժկու և իմաստուն. և

սիրեցին զնա Թաթարք, և պահեցին առ նա զհաւատարմութիւն և զհպատակութիւն միամտութեամբ։ Արդ խորհեցաւ Մանգու խան, թէ որպէս օրինակաւ մարթասցի նուաճել զԱսիա ողջոյն. և կամեցաւ նախ զփորձ առնուլ զօրութեան թագաւորին Ասիոյ, չև անձամբ շարժեալ 'ի վերայ նորա, և կամեցաւ ընտրել զիշխան քաջ. վասն որոյ արձակեաց բիւր մի հեծելոց մարտկաց, և ետ նոցա զօրագլուխ զօրաւոր և խորագէտ։ Այլ խաղացեալ սորա մարտիւ ընդդէմ Թուրքաց՝ 'ի պարտութիւն մատնեցաւ յերեսաց նոցա. ուստի Թաթարք փախստեամբ պաշտպանեցին անձանց։

Այսոցիկ այսպէս եղելոց Մանգու խան ընտրեաց զօրավար զոմն քաջ և իմաստուն, որում անուն էր Պայտոն. և ետ 'ի ձեռս նորա երեսուն հազար արս 'ի զօրաց Թաթարաց, որ կոչէին Տամաք, կամ հետազօտք. և պատուէր ետ նոցա գնալ դէպ ուղիղ զայն ճանապարհ, ընդ որ երթեալ էին տասն հազարքն, և չկալ ընաւ յերկար 'ի տեղւոջ ուրեք, մինչև հասցեն 'ի թագաւորութիւն երկրին Թուրքաց. և եթէ հնար ինչ է, փորձ փորձել դիմակալ լինելոյ սուլտանին երկրին Թուրքաց, որ 'ի մէջ ամենայն իշխանաց Ասիոյ զօրագոյն համբաւեալ լինէր. ապա եթէ հասու լինիցին՝ թէ չկարեն զդէմ ունել նորա, մի աճապարեսցեն 'ի կռիւ, այլ 'ի լաւ երկրի ուրեք զկայ առեալ դադարեսցեն, և ազդ արասցեն միում յորդւոց իւրոց՝ որ հուպ իցէ նոցա, զի օգնականութիւն առաքեսցէ ինքեանց. և յայնժամ մարթասցին անքոյթ ախիզբն առնել մարտի։

Արդ Պայտոն երեսուն հազարօք խաղացեալ օր ըստ օրէ՝ եհաս 'ի թագաւորութիւն երկրին Թուրքաց. և անդ լուաւ, թէ սուլտանն՝ որոյ փախուցեալ էր զառաջին Թաթարս, մեռեալ էր, և յաջորդեալ նմին որդի նորուն Գիաթատին անուն։ Այլ սորա լուեալ զհամբաւ գալստեան Թաթարաց՝ զահի հարաւ. և կոչեաց 'ի վարձու զօրս որչափ կարող եղև՝ յայլազգեաց և 'ի լատինացւոց. և 'ի մէջ այլոց ունէր 'ի ծառայութեան իւրում զերկու հազար լատինս, որոց էին երկու զօրագլուխք, մին կոչեցեալ Յոհաննէս

ըլմինադացի 'ի Կիպրոսէ, և միւսն Բոնիփակիոս ծննդեամբ 'ի Գենուայ. առաքեաց և առ մեծ ձակայ սուլդանն՝ խոստանալով եկաւորաց շնորհս և պարգևս. և այնպէս հաւաքեալ զմեծ բազմութիւն մարտկաց՝ խաղաց 'ի տեղին՝ ուր դեգերէին Թաթարք: Բայց Թաթարքն ոչ ինչ խռովեցան, այլ քաջութեամբ մխեցան 'ի պատերազմ 'ի Կոնսեդրայ. 'ի վախճանի յաղթող գտան Թաթարք, և Թուրքք տկարապէս մատնեցան 'ի պարտութիւն. և այսպէս կալան Թաթարք զԹագաւորութիւն երկրին Թուրքաց յամի տեառն 1244:

# ԳԼՈՒԽ ԺԹ.

Յաղագս Ճինոն խանի երրորդ ինքնակալի Թաթարաց:

Յետ սակաւ ժամանակի մեռաւ Ուխտադա խան, և պայազատեաց զինքնակալութիւն նորա որդի նորին Ճինոն, որ եղև սակաւակեաց. և յաջորդեաց նմա ազգական ոմն նորա կոչեցեալ Մանգոյ խան, որ գտաւ հզօրացեալ յոյժ. և էարկ ընդ տէրութեամբ իւրով զբազում գաւառս: Եւ իբրև մեծացաւ սիրտ նորա, անցեալ ընդ ծովն Կաթայի՝ չոգաւ առնուլ զկղզի մի. և յորժամ կայր 'ի պաշարման անդ կղզւոյն, արք կողմանցն այնոցիկ՝ որ են խորագէտք յոյժ և ճարտարք, առաքեցին արս՝ որ 'ի ծածուկ միջամուխ եղեն 'ի ծով, և այնչափ տոկացին 'ի ներքոյ նաւին՝ յորում էր Մանգոյ, մինչև գիշերայն առ փոքր փոքր գտան մտեալք ընդ ծակս 'ի նաւ անդր, զոր ոչ ոք կարծէր, մինչև սուզաւ նաւն 'ի խորս, և Մանգոյ խան անդէն հեղձաւ:

Իսկ Թաթարքն որ ընդ նմա էին, յետս դարձեալ զեղբայր նորա Խուպիլա խան ընտրեցին իւրեանց տէր. և այս Խուպիլա խան զամս քառասուն և երկու կալաւ զինքնակալութիւն Թաթարաց. դարձաւ 'ի քրիստոնէութիւն, և շինեաց զքաղաքն Իդբիւր կոչեցեալ 'ի Թագաւորութեան Կաթայի, մեծ քան զՀռոմ, որպէս ասի. և 'ի նմին քաղաքի եկեաց

Կուպիլա խան ինքնակալն Թաթարաց մինչև ցյե-տին օր կենաց իւրոց։ Այլ Թողեալ զինքնակալն Թաթարաց, ունիմք խօսել ինչ զերից որդւոց Ու-խտագա խանի, և զՀուլաւայ (կամ զՀաւլօնէ), և զիւրոց ժառանգաց։

## ԳԼՈՒԽ Ի

Յաղագս Ճոխի անդրանկին Ուխտագա խանի։

Ճոխի անդրանիկն Ուխտագայ խանի արշաւեաց հե-ծելութեամբ յարևմուտս ամենայն ամբոխիւ, զոր տուեալ էր նմա հօր իւրոյ. և եգիտ գաւառս ինչ արգաւանդս և զուարձալիս և հարուստս. ուր հա-րեալ զխորանս իւր՝ ստացաւ զԹագաւորութիւնն Թուրքաստանի, և զփոքրն պարսկաստան, տարա-ծեալ զտէրութիւն իւր մինչև 'ի գետն Փիսոն. և ընդ ամբոխի իւրում մնաց միշտ, որ մեծացան ընչիւք և բազմութեամբ. և ժառանգք նորին Ճոխեայ մին-չև ցարդ կալան զտէրութիւն կողմանցն այնոցիկ. և ոյք այժմ ունին զայն նահանգս՝ են երկու եղբարք, որոց մին կոչի Կապար, և միւսն Դոաքս. որք 'ի մէջ իւրեանց բաժանեցին զերկիրն և զամբոխն, և վա-րեն զնոսին խաղաղութեամբ և հանդստեամբ։

## ԳԼՈՒԽ ԻԱ.

Յաղագս Գայտոնի երկրորդ որդւոյ Ուխտագայ խանի։

Գայտոն երկրորդ որդի Ուխտագայ խանի ընդ Թա-Թարս զորս տուեալ էր հօր իւրոյ նմա, արշաւեաց 'ի կողմանս հիւսիսոյ, մինչև եհաս 'ի Թագաւորու-թիւն Կումանեայ։ Կումանք՝ որ ունին զբազմու-թիւն սպառազինաց, զդէմ կալան Թաթարաց, կար-ծելով պահել զերկիր իւրեանց. այլ 'ի վախճանի 'ի պարտութիւն մատնեցան, և փախստեայ գնացին մին-չև 'ի Թագաւորութիւն Հունգարիոյ. և ցարդ ևս

բազում կումացիք են անդ բնակեալ: Իսկ Պայտոն յետ 'ի բաց վարելոյ արտաքոյ քան զԹագաւորութիւն Կումանիոյ զամենայն կումացիս, եանց 'ի Թագաւորութիւն Կասսիոյ, և զայն ևս արկ ընդ լծով. և տիրեաց երկրին Կածարայ և Թագաւորութեան Բուլղարաց. և ընդ Ճանապարհ ընդ որ փախեան կումացիք, եհաս մինչև 'ի Թագաւորութիւն Հունգարաց: Յետ այսորիկ չոքան Թաթարք դէպ 'ի Թագաւորութիւն Գերմանիոյ, մինչև հասին 'ի գետ ինչ, որ հոսի ընդ դքսութիւնն Աւստրիոյ: Խորհէին Թաթարք անցանել ընդ կամուրջ մի տեղւոյն. այլ դուքսն Աւստրիոյ և այլ դրացիք ամրացուցին զանցս կամրջին. ուստի չթողին Թաթարաց անցանել ընդ այն: Զայրացեալ Պայտոնի ընդ իրսն՝ պատուէր ետ ամենեցուն անցանել. և ինքն նախ եղև միջամուխ ('ի գետն), եդեալ 'ի վտանգ մահու զանձն և զիւրսն. վասն զի մինչչև հասեալ 'ի միւս ափն գետոյն՝ երիվարքն խոնջեցան վասն լայնութե՛ գետոյն և բռնութեան ջուրցն. ուստի ընկղմեցաւ և հեղձաւ Պայտոն հանդերձ մեծաւ բազմութեամբ իւրոցն: Իսկ որոց չև էր մխեալ 'ի ջուրս, իբրև տեսին զայն, զահի զամօթի հարեալ ցաւով մեծաւ դարձան 'ի Թագաւորութիւն Կասսիոյ և Կումանիոյ, և կալան զնոսին ըստ ասացելոցս: Յայնմ հետէ Թաթարք ոչ գնացին յերկիրն Ալամանաց: Իսկ ոմանք 'ի ժառանգաց Պայտոնի հետ զհետէ կալան զտեղիս, զորս ստացան. և Որք այժմ ունին զտէրութիւնն, կոչին Թոխայի, և կեան խաղաղութեամբ և անդորրութեամբ:

## ԳԼՈՒԽ ԻԲ

Յաղագս Յոհաղատայի երրորդ որդւոյ Ուխտադայի:

Յոհաղատայ երրորդ որդի Ուխտադայ խանի հանդերձ Թաթարօք զորս տուեալ էր նմա հօր իւրոյ, արշաւեաց ընդ հարաւ, մինչև 'ի կողմանս փոքուն Հնդկաստանի. բազում անապատս եգիտ և լերինս և գետինս անջրդիս և ամայիս, մինչև չկարել անցա-

նել ընդ այն գաւառս. Թող զի կորոյս ամբոխ և ա-
նասուն բազում։ Յայնժամ դարձաւ յարևմուտս
կոյս, և զկնի բազում աշխատութեանց եհաս առ եղ-
բայր իւր Ճոխի, և պատմեաց զանցս իւր որ զճանա-
պարհային։ Իսկ Ճոխի կարեկից եղեալ եղբօր իւրում,
'ի տեղեացն զոր ստացեալ էր ինքեան և ազգի իւ-
րում, մասն ետ մարդասիրապէս. և այնուհետև եր-
կու այդ եղբարք միշտ 'ի միասին բնակեցան. և մինչև
ցայժմ ժառանգք նոցա դեգերին յայն կողմանս. այլ
այնպէս զի ժառանգք կրտսեր եղբօրն յարգեն զժա-
ռանգս մեծին. և շատացեալք ընդ բաժինս իւրեանց,
'ի միասին կեան խաղաղութեամբ և յանդորրու. և
յաջորդ Ճոխին՝ որ այժմ կենդանի է, կոչի Պարախ։

## ԳԼՈՒԽ ԻԳ

Յաղագս Մանգոյ խանի չորրորդ ինքնակալի Թաթարաց։

Յամի տեառն 1253 արքայն Հայոց տէր Հե-
թում իբրև ետես, զի Թաթարք տիրապէս ընդ
լծով արկին զամենայն թագաւորութիւն, զգաւառս
և զտեղիս մինչև 'ի թագաւորութիւն երկրին Թուր-
քաց, խորհուրդ արարեալ ընդ իմաստունս՝ խորհեցաւ
անձամբ երթալ առ ինքնակալն Թաթարաց, զի ա-
ռաւել դիւրաւ գտցէ զշնորհ և զսէր նորա, և մար-
թասցի կռել զդաշն խաղաղութեան ընդ նմա։ Այլ
նախ առաքեաց զպարոն Սինիբաղդ գունդստապլն
թագաւորութեան Հայոց զիւր մտերիմն, զի հրաման
առեալ անքոյթ կարասցէ երթալ. ուստի սոյն սա եղ-
բայր արքայի գնաց առ ինքնակալն Թաթարաց՝ ընու-
բարւոք զգործս պաշտաման իւրոյ. և յետ չորից ա-
մաց դարձաւ 'ի Հայս՝ պատմել զոր ետես և զոր
լուաւ։ Յայնժամ թագաւորն Հայոց չուեաց ծած-
կաբար, զի մի ծանիցի յերկրին Թուրքաց, ընդ որ
պարտ էր անցանել. և որպէս կամեցեալ էր ա̅յ,
սուլդանն Թուրքաց պարտեցաւ տիրապէս 'ի զօրա-
վարէ ումեմնէ Թաթարաց, որ մարդասիրութեամբ
ընկալաւ զարքայն Հայոց, և ետ տանել զնա մինչև 'ի

թագաւորութիւն Հայոց և 'ի դուռն երկաթի. անտի յայլոց զօրագլխաց յուղարկեալ լինէր մինչև յՄմեզէկ, ուր նստէր Սանդոյ խան Թաթարաց. զոր ուրախութեամբ ընկալեալ էր Սանդոյ. զի ոչ ոք 'ի մեծամեծ իշխանաց հակառակ կայր Ճինկիզի, յորժամ էանց ընդ լեառն բելգեան, և զմեծամեծս տան իւրոյ ընկերացոյց նմա :

Իսկ Թագաւորն Հայոց յետ աւուրց ինչ աղաչեաց զինքնակալն վասն դաշին խաղաղութեան և այլոց իրաց՝ որոց ցանկայր. և 'ի հաճել ինքնակալին, առաջի եդ նմա արքայն Հայոց զխնդիրս իւր : Նախ աղաչեաց զինքնակալն, զի հանդերձ ազգաւ իւրով դարձցի 'ի հաւատս Քրիստոսի, և ընկալցի զմկրտութիւն : Երկրորդ զի խաղաղութիւն և բարեկամութիւն մշտնջենաւոր հաստատեսցի 'ի մէջ նոցա : Երրորդ զի յամենայն երկիրս Թաթարաց կարիցեն շինել եկեղեցիս քրիստոնէից. և Հայք ազատ լինիցին յամենայն կապալաց և յայլոց ծանրութեանց : Չորրորդ զի զսուրբ երկիրն և զսուրբ գերեզմանն առցէ 'ի ձեռաց Թուրքաց, և տացէ քրիստոնէից : Հինգերորդ զի բարձցէ 'ի Բաղտատայ զխալիֆայն, որ էր գլուխ դենի : Վեցերորդ զի ամենայն Թաթարք յօգնականութիւն իւր հասցեն 'ի խնդրել իւրում: Եօթներորդ զի ամենայն գաւառք աշխարհին Հայոց, յորս տիրեալ էին Թուրքք, յինքն դարձուսցին :

Յայնժամ ինքնակալն Թաթարաց խորհուրդ արարեալ ընդ իշխանս և ընդ մեծամեծս իւր՝ ետ պատասխանի արքային Հայոց. Զաղաչանս քո յանձն առնումք. զիս տաց մկրտել, ընկալայց զքրիստոսական հաւատս, և խնամ կալայց՝ զի ընկալցին ամենայն հպատակք իմ. բայց առանց ամենայն բռնութեան : Ըստ երկրորդին՝ խաղաղութիւն լիցի 'ի մէջ մեր և ձեր մշտնջենաւոր՝ փաստողական և պաշտպանողական: Նոյնպէս կամիմք, զի ամենայն եկեղեցիք քրիստոնէից՝ եկեղեցականք և աշխարհականք վայելեսցեն 'ի շնորհս ազատութե՛, և ոչ ոք իշխեսցէ նեղել զՀայս : Զոր երկիրն՝ եթէ կարասցուք՝ անձամբ յարգեսցուք. այլ քանզի մեք յայլ իրս եմք զբաղեալ, եղբայրն մեր Հուլաւոն առնիցէ զայդ, և զերկիրն սուրբ դարձուսցէ

մեծք նոցա չկամեցան հաւատալ տեսլեանս, մանաւանդ ըստ խմիք ծիծաղեցան զծերունեաւ։ Իսկ 'ի յաջորդ գիշերի նոյն առաջնորդք տեսին զսպիտակ զինուորն և զտեսիլն, որպէս ծերն Կանգիոս (Չինկիզ) պատմեալ էր ամենեցուն. և պատուէր հրամանի տուաւ նոցա 'ի կողմանէ այ̃ անմահի, զի հնազանդ լինիցին Կանգիոսի, և տացեն պահել ամենեցուն զհրամանս նորա։ Ուստի եօթն այն առաջնորդք և մեծամեծք եօթնեակ ազգաց Թաթարաց համահաւաքեալ զժողովուրդս՝ ետուն նոցա հնազանդիլ Կանգիոսի (Չինկիզայ) որպէս 'ի բնէ տեառն իւրեանց։

Ապա զաթոռ նորա հաստատեցին 'ի միջի իւրեանց, և սփռեալ զօթոց ինչ (կամ գորգ հիւսեալ) սեւագոյն յոյժ 'ի վերայ գետնոյ՝ նստուցին 'ի վերայ նորա զՉինկիզ (կամ զԿանգիոս). և եօթն առաջնորդք մեծամեծք ամբարձին զնա, և եդին 'ի վերայ աթոռոյ մեծաւ ցնծութբ̃ և աղաղակաւ, և կոչեցին զնա Խան՝ առաջին ինքնակալ, և արարին նմա յարգութիւն ծնրադրութեամբ իբրև ինքնակալի և տեառն։ Արդ յաղագս այսպիսի հանդիսի՝ զոր արարին Թաթարք առաջնոյ ինքնակալի և տեառն իւրեանց, և վասն օթոցին (հիւսելոյ) մի՛ ոք զարմասցի. զի թերևս զայլ գեղեցիկ պաստառ ոչ ունէին. կամ գուցէ այնչափ տխմար էին և անշուք, զի զայլ լաւագոյն չունէին կամ ոչ գիտէին առնել։

Այլ վասն ներկայ ժամանակիս կարող է ոք զարմանալ, զի յորժամ նոյն Թաթարք զբազում թագաւորութիւնս ստացան և զանբաւ մեծութիւնս, իբր զի 'ի ձեռին ունին զտէրութիւն Ասիոյ և զճոխութիւն, և մինչև 'ի սահմանս Յունգարաց են տիրեալ, ոչ վասն այսորիկ իսկ կամեցան թողուլ իւիք զհին սովորուն̃ կամ զկերպ իւրեանց. մանաւանդ թէ պէտք են, զի հաստատութեամբ ինքնակալին Թաթարաց բոլորովին պահեսցի այն կարգ, զոր կալան նախնիք իւրեանց։ Եւ ես երկիցս անձամբ առաջիկայ գտայ այսմ հաստատութեան առ 'ի յինքնակալէ։ Այլ մեք յառաջիկայսն դարձցուք։

Չինկիզ խան՝ որ եղև ինքնակալ հաւանութեամբ

հասարակաց և հաճութեամբ ամենայն Թաթարաց, մինչև բուռն հարեալ յիւրս իւր՝ փորձել կամեցաւ, եթէ Թաթարք ամենայն հնազանդին ինքեան հաւատարմութեամբ. վասն որոյ եհան պատուէրս ինչ պահել ամենեցուն։ Առաջին պատուէրն այս էր, զի ամենայն Թաթարք հաւատասցեն և հնազանդեսցին ա̄յ անմահի, որ ակնարկութեամբ ստացաւ զպատիւ ինքնակալութեան։ Զայս պատուէր պահեցին Թաթարք. և յայնմ ժամանակէ հետէ սկսան կարդալ զա̄ծ. և մինչև ցայսօր յա̄մ 'ի գործս իւրեանց Թաթարք կարդան զանունն տեառն։ Երկրորդ հրաման ետ, զի 'ի վերայ իւրաքանչիւր տասանց կարգեսցի մի ոստիկան, և 'ի վերայ հազարաց դիցի մի ոմն, և 'ի վերայ տասն հազարաց ոմն մի. և կոչեաց զբիւր մի զօրու՝ գունդ. և ևս հրաման ետ, զի եօթն առաջնորդք կամ զօրավարք լիցին 'ի վերայ եօթանց ազանց Թաթարաց, որ զամենայն աշտիճան պատուոյ 'ի բաց եղեալ և հանապազ զայդ առնիցեն։

Երրորդ պատուէր ահարկու և անհնարին. քանզի հրամայեաց եօթանց այն զօրավարաց Թաթարաց, զի իւրաքանչիւր 'ի նոցանէ ածցէ զանդրանիկ իւր, և ինքնին ձեռամբ իւրով հատցէ զգլուխն։ Եւ թէպէտ այս հրաման երևէր անագորոյն և անօրէն, բայց ոչ ոք իշխեաց հակառակ կալ իւիք. վասն զի գիտէին՝ թէ նա տէր է ա̄ծային տեսչութեամբ. վասն որոյ զոր ինչ պատուէր ետ ինքնակալն, անյապաղ կատարեցին։

Արդ յետ իմանալոյ Չինկիզ խանի զսիրտ իւրոցն՝ տեսեալ թէ մահուչափ պատրաստ են հնազանդիլ ինքեան, որ սահմանեաց ամենեցուն՝ պատրաստ լինել 'ի պատերազմ։ Արդ հեծելութիւն արարին Թաթարք նախ ընդդէմ մերձաւոր սահմանակցաց իւրեանց, և արկին զնոսա ընդ լծով. և զօրս յառաջն տեարք էին նոցա, արկին 'ի յետին ծառայութի̃։ Անդուստ յառաջ խաղաց Չինկիզ խան ընդդէմ այլոց ազգաց բազմաց, և արագ արագ նուաճեաց զնոսա ընդ տէրութե̃ իւրով. քանզի զամենայն ինչ առնէր Չինկիզ խան սակաւաձեռն գնդաւ, և աջողէր նմա ամենայն ինչ։

Դէպ եղև յաւուր միում, զի Չ՚ինկիզ խան արշաւէր սակաւ հեծելօք իւրովք, և ահա ընդ առաջ ելին նորա թշնամիք բազմութեամբ. և 'ի խառնիլ պատերազմի՝ այն ինչ ինքնակալն Չ՚ինկիզ խան պաշտպանէր զանձն իւր, երիվար նորա յոր աշտանակեալ էր՝ սպանաւ 'ի մարտի անդ: Իբրև տեսին Թաթարք զտէրն իւրեանց տապաստ անկեալ 'ի մէջ ճակատուց, լքան 'ի յուսոյ փրկութե̃, և թիկունս դարձուցեալ՝ ճողոպրեցին զանձինս 'ի ձեռաց թշնամեաց: Իսկ նոքա առհասարակ զհետ պնդէին փախուցելոց փութով, ինչ ոչ գիտելով զգետնատարած անկումն թագաւորին: Յայնժամ Չ՚ինկիզ խան 'ի վեր վազեաց, և թաքոյց զանձն 'ի մէջ թփոց՝ զերծանիլ 'ի վտանգէ մահու. և այն ինչ դարձեալքն 'ի կռուոյ 'ի դաշտ՝ դիակապուտ առնէին, և 'ի խնդիր լինէին թաքուցելոց, դէպ եղև՝ զի հաւ մի՝ որ 'ի բազմաց բու կոչի, եկեալ նստաւ 'ի վերայ թփոց՝ ընդ որովք ծածկեալ էր ինքնակալն. և խնդրակքն տեսին զայն հաւ 'ի թուփս նստեալ, և յայն սակս համարեցան՝ թէ չիք ոք անդ. և առանց 'ի խնդիր լինելոյ նորա՝ զոր խնդրէինն, մեկնեցան 'ի տեղւոջէն՝ ասելով յիւրեանս, եթէ լինէր ոք անդ թաքուցեալ՝ հաւն այն չնստէր բնաւ անդէն:

Ապա 'ի լռութեան գիշերոյ Չ՚ինկիզ խան առ երկիւղի թշնամեաց զանկոխ ճանապարհս գնալով եհաս առ իւրսն, և պատմեաց նոցա կարգաւ և ստուգութեամբ զոր ինչ անցք անցին ընդ նա: Յայնժամ Թաթարք գոհութիւն մատուցին ա̃յ անմահի. և հաւն այն՝ որ յետ ա̃յ ազատարար կարծեցաւ Չ՚ինկիզ խանին, այնչափ 'ի յարգի եղև յետոյ առ նոսա, զի որ ունիցի զփետուր մի այնր թռչնոյ, երջանիկ զանձն վարկանի. և կրեն Թաթարք զայն փետուր մեծաւ պատուով 'ի վերայ գլխոց իւրեանց: Իսկ ես վասն այն յիշեցի զայս բան յայսմ մատենի, որպէս զի յայտնի լիցի պատճառն, թէ ընդէ՞ր տանին Թաթարք փետուրս 'ի գլուխս իւրեանց:

Արդ Չ՚ինկիզ խան ինքնակալ ամենայն գաւառաց եղեալ, որ էին յայսկոյս բելգեան լերին, տիրեաց նոցին առանց անհանգստութեան իրիք. մինչև ետես զայլ տեսիլ, որպէս զկնի ճառեսցի: Ու մի լիցի

ումեք զարմանալ, զի չեդի 'ի պատմութեան աստ զժամանակն հաւաստի. զի թէպէտ և 'ի բազմաց խնդրեցի զհաւաստիս ստուգութեան, բայց չկարա-ցի գտանել զոք, որ լիով տացէ ինձ տեղեկութիւն զայդմանէ։ Այլ պատճառ զայս կարծեմ անգիտելի մնալոյ ստոյգ ժամանակի պատմութեանց, վասն զի 'ի սկզբանէ Թաթարք չունէին նշանագիրս. վասն ո-րոյ ժամանակն և անցք իրաց անցանէին առանց նշա-նակելոյ յումեքէ, և այնպէս 'ի մոռացօնս լինէին։

## ԳԼՈՒԽ Ժ.

Յաղագս Չինկիզ խանի նախկին ինքնակալի Թաթարաց։

Յետ նուաճելոյ Չինկիզ խանի ընդ տէրութեամբ իւրով զամենայն թագաւորութիւնս և զգաւառս՝ որ էին շուրջ զբեղգեան լերամբ, 'ի գիշերի միում ե-տես զայլ տեսիլ. քանզի տեսանէր միւսանգամ զսպի-տակ զօրականն որ ասէր ցնա. Չինկիզ խան, կամք այ անմահին է, զի դու անցցես ընդ լեառն բեղգեան, և ընդ արևմուտս ուղղեսցես զընթացս քո, և զրա-ւեսցես զթագաւորութիւնս, զգաւառս և զգետինս, և ընդ ինքնակալութբ քով արկցես զբազում ազգս։ Եւ զի հաւաստի լինիցիս թէ ասացեալքս յինէն՝ են 'ի կողմանէ այ անմահի, արի և գնա ազգաւ քով 'ի լեառն բեղգեան՝ 'ի տեղին, ուր ծովն կից է նմին. և անդ իջցես, և դէպ յարևելս ինն ծնրադրութեամբք լինիցս երկիր պագցես այ անմահի. և նա ինքն ամե-նակալն ճանապարհ ցուցցէ քեզ, որով դիւրաւ կա-րող լինիցիս անցանել զայնու լերամբ։ Արդ 'ի տեսա-նել Չինկիզ խանի զայն տեսիլ՝ յարեաւ խնդութբ, և ոչ ինչ յերկուացաւ. վասն զի տեսիլն առաջին որպէս ճշմարտեալ՝ տայր նմա ստուգութիւն զայլոցն։ Նմին իրի վաղվաղակի ժողովեաց զիւրսն յամենայն կողմանց, և հրաման ետ գալ զկնի իւր կանամբք և որդւովք և ամենայն ընչիւք իւրեանց. և այնպէս չոգան մինչև հասին 'ի տեղին՝ ուր ծովն մեծ և խոր կից էր ընդ լերինս, և չերևէր ինչ ճանապարհ կամ

անցք 'ի տեղւոջն ։ Նոյնպէս վաղվաղակի Չ՛ինկիզ խան՝ որպէս հրամայեալ էր ինքեան յանմահէն այ, էջ յերիվարէն . զնոյն արարին և իւրքն առ հասարակ . և յարևելս կոյս ծունր կրկնեալ, իննիցս երկիր պագանէին, և խնդրէին օգնականութիւն յամենակալ և յանմահն այ, զի ցուցցէ նոցա Ճանապարհ և անցս գնալոյ ։ Արդ կացին յաղօթս զգիշերն զայն . և ընդ առաւօտն յարուցեալ տեսին, զի ծովն եօթն ոտնաչափ յետս ընկրկեալ էր 'ի լերանց, և թողեալ էր Ճանապարհ լայն ։ Աքանչացան ընդ այն Թաթարք առ հասարակ 'ի տեսանել զիրսն, և գոհութիւն մատուցեալ այ անմահի ջերմ սրտիւ, անցին ընդ Ճանապարհն՝ զոր գտին բացեալ, և ուղղեցին զգնացս իւրեանց յարևմուտս կոյս ։

Այլ ըստ որում գտանի 'ի պատմութիւնս Թաթարաց, յետ անցանելոյ Չ՛ինկիզ խանի և Թաթարաց ընդ նախասացեալ լերինս՝ կրեցին զնեղութիւն սովոյ և ծարաւոյ զաւուրս ինչ . վասն զի գտին զերկիր անապատ, և ջուրս դառինս և աղիս, զոր ոչ իւիք կարէին ըմպել, մինչև տեսին երկիր բարի, ուր հասին նոցա ամենայն կարևորք առատապէս . և զաւուրս բազումս յամեաց Չ՛ինկիզ խան յայնմ բերրի երկրի ։ Այլ պատահեաց նմա յակնարկութենէն այ ծանր ինչ հիւանդութիւն, մինչև անյոյս լինել բժշկաց յառողջութենէ նորա ։ Իսկ Չ՛ինկիզ խան ինքնակալն Թաթարաց կոչեաց առաջի իւր զերկոտասանեսին որդիս իւր և խրատ ետ նոցա, զի լինիցին միշտ միաբանք և միախոհք . և ետ նոցա օրինակ այսպիսի . հրամայեաց՝ զի իւրաքանչիւր որդիքն բերցեն մի մի նետ . և յորժամ կային 'ի միասին ամենեքին, հրաման ետ աւագին, զի խորտակեսցէ զամենայնն 'ի մի խուրձ միանգամայն՝ եթէ կարող ինչ է . և նորա առեալ զերկոտասան նետսն՝ ջանացաւ խորտակել զնոսին, այլ չկարաց բնաւին . ապա ետ զնոսա երկրորդ որդւոյն և երրորդին, և այլոց մի ըստ միոջէ . այլ ոչ ոք կարաց խորտակել . յայնժամ հրամայեաց կրտսեր որդւոյն, զի ուրոյն ուրոյն առեալ զնետսն բաժանեալս՝ խորտակեսցէ մի առ մի . և նա հեշտեաւ խորտակեաց զամենայն ։ Յայնժամ դարձաւ Չ՛ինկիզ խան առ

որդիս իւր և ասէ ցնոսա։ Ընդէ՞ր, որդեակք իմ, չկարացիք բեկանել զնետս՝ զորս ետու ձեզ 'ի խորտակել. և նոքա ասեն։ Վասն, զի տէր, բազումք էին 'ի միասին։ Իսկ ընդէ՞ր եբեկ զնոսին եղբայրն ձեր կրտսեր։ Վասն զի, տէր, ուրոյն ուրոյն էին բաժանեալ։ Իսկ ասէ Չինկիզ խան. Նոյնպէս լինիցի և ընդ ձեզ. ցորչափ լինիջիք մի սիրտ և մի ոգի, տևեսցէ տոկուն ինքնակալութիւն ձեր հանապազ. այլ ընդ բաժանել ձեր յիրերաց՝ փութով յոչինչ դարձցին տէրութիւնք ձեր։ Բազում և այլ բարի բարի օրինակս ետ Չինկիզ խան, որ պահեցան առ Թաթարս, և ասին 'ի բարբառ նոցա Եասաք Չինկիզ խանի, այսինքն սահմանք Չինկիզ խանի։

Յետ այսորիկ մինչև մեռեալ՝ զիմաստնագոյնն և զլաւն յորդւոց իւրոց կացոյց տէր և պայազատ ինքնակալութեան, որում անուն էր Ուխտաղա (կամ Հօքքօդա) խան։ Ի այսոսիկ վճարեալ հանդեաւ խաղաղութեամբ Չինկիզ խան. և որդի նորա Ուխտաղա խան եղաւ յաթոռ ինքնակալութեան հօր իւրոյ։ Բայց մինչև կնքեալ մեր զայս պատմութիւն, զայն ասասցուք, թէ որպէս առ Թաթարս 'ի յարգի է յոյժ իննեակ թիւն. այս է 'ի յիշատակ ինն ծնրադրութեանց, զոր արարին ա̃յ անմահի 'ի լեառն բելգեան, որպէս պատուիրեալ էր նոցա սպիտակ զօրականն, և լայնութեան ինն ոտնաչափու, ընդ որ անցին, զթիւն զայն բարեբաստիկ համարին։ Վասն որոյ որ ոք կամի յանդիման առնել ինչ տեառն Թաթարաց, պարտի մատուցանել ինն իրս, եթէ կամի՝ զի հաճոյ լինիցի ընծայն իւր. և շատ է թէ ինն ացեն իրքն մատուցեալք, ընծայն այն համարեալ լինի որպէս բարեբախտիկ և լաւ, և այս սովորութիւն մինչև ցայսօր պահի 'ի մէջ Թաթարաց։

# ԳԼՈՒԽ ԺԸ

Յաղագս Ուխտադայ խանի երկրորդ ինքնակալի Թաթարաց։

Ուխտաղա խան՝ որ յաջորդեաց հօր իւրում յինքնակալութեան, գտաւ այր հուժկու և իմաստուն. և

սիրեցին զնա Թաթարք, և պահեցին առ նա զհաւատարմութիւն և զհպատակութիւն միամտութեամբ։

Արդ խորհեցաւ Մանգու խան, թէ որպէս օրինակաւ մարթասցի նուաճել զՍիրիա ողջոյն. և կամեցաւ նախ զփորձ առնուլ զօրութեան Թագաւորին Ասիոյ, չև անձամբ շարժեալ 'ի վերայ նորա, և կամեցաւ ընտրել զիշխան քաջ. վասն որոյ արձակեաց բիւր մի հեծելոց մարտկաց, և ետ նոցա զօրագլուխ զօրաւոր և խորագէտ ։ Այլ խաղացեալ սորա մարտիւ ընդդէմ Թուրքաց՝ 'ի պարտութիւն մատնեցաւ յերեսաց նոցա. ուստի Թաթարք փախստեամբ պաշտպանէին անձանց։

Այսոցիկ այսպէս եղելոց Մանգու խան ընտրեաց զօրավար զոմն քաջ և իմաստուն, որում անուն էր Պայտոն. և ետ 'ի ձեռս նորա երեսուն հազար արս 'ի զօրաց Թաթարաց, որ կոչէին Տամաք, կամ հետազօտք. և պատուէր ետ նոցա գնալ դէպ ուղիղ զայն Ճանապարհ, ընդ որ երթեալ էին տասն հազարքն, և չկալ ընաւ յերկար 'ի տեղւոջ ուրեք, մինչև հասցեն 'ի Թագաւորութի երկրին Թուրքաց. և եթէ հնար ինչ է, փորձ փորձել դիմակալ լինելոյ սուլտանին երկրին Թուրքաց, որ 'ի մէջ ամենայն իշխանաց Ասիոյ զօրագոյն համբաւեալ լինէր. ապա եթէ հասու լինիցին՝ թէ չկարեն զդէմ ունել նորա, մի աճապարեսցեն 'ի կռիւ, այլ 'ի լաւ երկրի ուրեք զկայ առեալ դադարեսցեն, և ազդ արասցեն միում յորդւոց իւրոց՝ որ հուպ իցէ նոցա, զի օգնականութիւն առաքեսցէ ինքեանց. և յայնժամ մարթասցին անքոյթ ա[illegible]իզան առնել մարտ։

Արդ Պայտոն երեսուն հազարօք խաղացեալ օր ըստ օրէ՝ եհաս 'ի Թագաւորութի երկրին Թուրքաց. և անդ լուաւ, թէ սուլտանն՝ որոյ փախուցեալ էր զառաջին Թաթարս, մեռեալ էր, և յաջորդեալ նմին որդի նորուն Ղիաթատին անուն։ Այլ սորա լուեալ զհամբաւ գալստեան Թաթարաց՝ զահի հարաւ. և կոչեաց 'ի վարձու զօրս որչափ կարող եղև՝ յայլազգեաց և 'ի լատինացւոց. և 'ի մէջ այլոց ունէր 'ի ծառայութե իւրում զերկու հազար լատինս, որոց էին երկու զօրագլուխք, մին կոչեցեալ Յոհաննէս

ընմինադացի 'ի Կիպրոսէ, և միւսն Մոնփիտակեոս ծննդեամբ 'ի Գենուայ. առաքեաց Նա առ մերձակայ սուլդանն՝ խոստանալով եկաւորաց շնորհս և պարգևս. և այնպէս հաւաքեալ զմեծ բազմութիւն մարտկաց՝ խաղաց 'ի տեղին՝ ուր դեգերէին Թաթարք։ Բայց Թաթարքն ոչ ինչ խռովեցան, այլ քաջութեամբ մխեցան 'ի պատերազմ 'ի Կոսեդղրաք. 'ի վախճանի յաղթող գտան Թաթարք, և Թուրքք տերապէս մատնեցան 'ի պարտութիւն. և այսպէս կալան Թաթարք զԹագաւորութիւն երկրին Թուրքաց յամի տեառն 1244։

# ԳԼՈՒԽ ԺԹ

Ցաղագս Ճինոն խանի երրորդ ինքնակալի Թաթարաց։

Յետ սակաւ ժամանակի մեռաւ Ուխաղա խան, և պայազատեաց զինքնակալութիւն նորա որդի նորին Ճինոն, որ եղև սակաւակեաց. և յաջորդեաց նմա ազգական ոմն նորա կոչեցեալ Մանգու խան, որ գտաւ հզօրացեալ յոյժ. և էարկ ընդ տէրութեամբ իւրով զբազում գաւառս։ Եւ իբրև մեծացաւ սիրտ նորա, անցեալ ընդ ծովն Կաթայի՝ չոքաւ առնուլ զկղզի մի. և յորժամ կայր 'ի պաշարման անդ կղզւոյն, արք կողմանցն այնոցիկ՝ որ էին խորագէտք յոյժ և ճարտարք, առաքեցին արս՝ որ 'ի ծածուկ միջամուխ եղեն 'ի ծով, և այնչափ տոկացին 'ի ներքոյ նաւին՝ յորում էր Մանգու, մինչև գիշերայն առ փոքր փոքր գտան մտեալք ընդ ծակս 'ի նաւ անդր, զոր ոչ ոք կարծէր, մինչև սուզաւ նաւն 'ի խորս, և Մանգու խան անդէն հեղձաւ։

Իսկ Թաթարքն որ ընդ նմա էին, յետս դարձեալ՝ զեղբայր նորա Խուպիլա խան ընտրեցին իւրեանց տէր. և այս Խուպիլա խան զամս քառասուն և երկու կալաւ զինքնակալութիւն Թաթարաց. դարձաւ 'ի քրիստոնէութիւն, և շինեաց զքաղաքն Իդբիւր կոչեցեալ 'ի Թագաւորութեան Կաթայի, մեծ քան զՀռոմ, որպէս ասի. և 'ի նմին քաղաքի եկեաց

Խուպիլա խան Չինքնական Թաթարաց մինչև ցյետին օր կենաց իւրոց։ Այլ Թողեալ զՉինքնական Թաթարաց, ունիմք խօսել ինչ զերից որդւոց Ուխադա խանի, և զՀուլաւայ (կամ զՀաոլոնէ), և զիւրոց ժառանգաց։

## ԳԼՈՒԽ Ի

Յաղագս Քոխի անդրանկին Ուխադա խանի։

Քոխի անդրանիկն Ուխադայ խանի արշաւեաց հեծելութեամբ յարևմուտս ամենայն ամբոխիւ, զոր տուեալ էր նմա հօր իւրոյ. և եգիտ գաւառս ինչ արգաւանդս և զուարճալիս և հարուստս. ուր հարեալ զխորանս իւր՝ ստացաւ զթագաւորութիւնն Թուրքաստանի, և զփոքրն պարսկաստան, տարածեալ զտէրութիւն իւր մինչև ’ի գետն Փիսոն. և ընդ ամբոխի իւրում մնաց միշտ, որ մեծացան ընչիւք և բազմութեամբ. և ժառանգք նորին Քոխեայ մինչև ցարդ կալան զտէրութիւն կողմանցն այնոցիկ. և ոյք այժմ ունին զայն նահանգս՝ են երկու եղբարք, որոց մին կոչի Կապար, և միւսն Դուաքս. որք ’ի մէջ իւրեանց բաժանեցին զերկիրն և զամբոխն, և վարեն զնոսին խաղաղութեամբ և հանդստեամբ։

## ԳԼՈՒԽ ԻԱ

Յաղագս Գայտոնի երկրորդ որդւոյ Ուխադայ խանի։

Գայտոն երկրորդ որդի Ուխադայ խանի ընդ Թաթարս զորս տուեալ էր հօր իւրոյ նմա, արշաւեաց ’ի կողմանս հիւսիսոյ, մինչև եհաս ’ի թագաւորութիւն Կումանեայ։ Կումանք՝ որ ունին զբազմութիւն սպառազինաց, զդէմ կալան Թաթարաց, կարծելով պահել զերկիր իւրեանց. այլ ’ի վախճանի ’ի պարտութիւն մատնեցան, և փախստեայ գնացին մինչև ’ի թագաւորութիւն Հունգարիոյ. և ցարդ ևս

բազում կումացիք են անդ բնակեալ։ Իսկ Պայտոն յետ 'ի բաց վարելոյ արտաքոյ քան զԹագաւորութիւն Կումանիոյ զամենայն կումացիս, էանց 'ի Թագաւորութիւն Կասսիոյ, և զայն ևս արկ ընդ լծով. և տիրեաց երկրին Կածարայ և Թագաւորութեան Բուլղարաց. և ընդ Ճանապարհ ընդ որ փախեան կումացիք, եհաս մինչև 'ի Թագաւորութիւն Հունգարաց։ Յետ այսորիկ չոքան Թաթարք դէպ 'ի Թագաւորութիւն Գերմանիոյ, մինչև հասին 'ի գետ ինչ, որ հոսի ընդ դքսութիւնն Աւստրիոյ։ Խորհէին Թաթարք անցանել ընդ կամուրջ մի տեղւոյն. այլ դուքսն Աւստրիոյ և այլ դրացիք ամրացուցին զանցս կամրջին. ուստի չԹողին Թաթարաց անցանել ընդ այն։ Զայրացեալ Պայտոնի ընդ իրսն՝ պատուէր ետ ամենեցուն անցանել. և ինքն նախ եղև միջամուխ ('ի գետն), եդեալ 'ի վտանգ մահու զանձն և զիւրսն. վասն զի մինչև հասեալ 'ի միւս ափն գետոյն՝ երիվարքն խոնջեցան վասն լայնութ̃ե գետոյն և բռնութեան ջուրցն. ուստի ընկղմեցաւ և հեղձաւ Պայտոն հանդերձ մեծաւ բազմութեամբ իւրոցն։ Իսկ որոց չև էր մխեալ 'ի ջուրս, իբրև տեսին զայն, զահի զամօԹի հարեալ ցաւով մեծաւ դարձան 'ի Թագաւորութիւն Կասսիոյ և Կումանիոյ, և կալան զնոսին ըստ ասացելոցս։ Յայնմ հետէ Թաթարք ոչ գնացին յերկիրն Ալամանաց։ Իսկ ոմանք 'ի ժառանգաց Պայտոնի հետ զհետէ կալան զտեղիս, զորս ստացան. և դոք այժմ ունին զտէրութիւնն, կոչին Թոխայի, և կեան խաղաղութեամբ և անդորրութեամբ։

## ԳԼՈՒԽ ԻԲ

Յաղագս Յոհաղատայ երրորդ որդւոյ Ուխադայի։

Յոհաղատայ երրորդ որդի Ուխադայ խանի հանդերձ Թաթարօք զորս տուեալ էր նմա հօր իւրոյ, արշաւեաց ընդ հարաւ, մինչև 'ի կողմանս փոքուն Հնդկաստանի. բազում անապատս եգիտ և լերինս և գետինս անջրդիս և ամայիս, մինչև չկարել անցա-

նել ընդ այն գաւառս. Թող զի կորոյս ամբոխ և անասուն բազում: Յայնժամ դարձաւ յարևմուտս կոյս, և զկնի բազում աշխատութեանց եհաս առ եղբայր իւր Վոխի, և պատմեաց զանցս իւր որ զճանապարհայն: Իսկ Վոխի կարեկից եղեալ եղբօր իւրում, 'ի տեղեացն զոր ստացեալ էր ինքեան և ազգի իւրում, մասն ետ մարդասիրապէս. և այնուհետև երկու այդ եղբարք միշտ 'ի միասին բնակեցան. և մինչև ցայժմ ժառանգք նոցա դեգերին յայն կողմանս. այլ այնպէս զի ժառանգք կրտսեր եղբօրն յարգեն զժառանգս մեծին. և շատացեալք ընդ բաժինս իւրեանց, 'ի միասին կեան խաղաղութեամբ և յանդորրու. և յաջորդ Վոխին՝ որ այժմ կենդանի է, կոչի Պարախ:

## ԳԼՈՒԽ ԻԳ.

Ցաղագս Մանգոյ խանի չորրորդ ինքնակալի Թաթարաց:

Յամի տեառն 1253 արքայն Հայոց տէր Հեթում իբրև ետես, զի Թաթարք տիրապէս ընդ լծով արկին զամենայն թագաւորութիւն, զգաւառս և զտեղիս մինչև 'ի թագաւորութիւն երկրին Թուրքաց, խորհուրդ արարեալ ընդ իմաստունս՝ խորհեցաւ անձամբ երթալ առ ինքնակալն Թաթարաց, զի առաւել դիւրաւ գտցէ զշնորհ և զսէր նորա, և մարթասցի կռել զդաշն խաղաղութեան ընդ նմա: Այլ նախ առաքեաց զպարոն Սինիբաղդ գունդստաբլն թագաւորութեան Հայոց զիւր մտերիմն, զի հրաման առեալ անքոյթ կարասցէ երթալ. ուստի սոյն սա եղբայր արքայի գնաց առ ինքնակալն Թաթարաց՝ ընուլ բարուոք զգործս պաշտաման իւրոյ. և յետ չորից ամաց դարձաւ 'ի Հայս՝ պատմել զոր ետեսն և զոր լուաւ: Յայնժամ թագաւորն Հայոց չուեաց ծածկաբար, զի մի ծանիցի յերկրին Թուրքաց, ընդ որ պարտ էր անցանել. և որպէս կամեցեալ էր ն̃յ, սուլդանն Թուրքաց պարտեցաւ տիրապէս 'ի զօրավարէ ումեմնէ Թաթարաց, որ մարդասիրութեամբ ընկալաւ զարքայն Հայոց, և ետ տանել զնա մինչև 'ի

Թագաւորութիւն Հայոց և 'ի դուռն երկաթի. ան-
տի յայլոց զօրագլխաց յուղարկեալ լինէր մինչև ՅՍա-
մոզէկ, ուր նստէր Սանգոյ խան Թաթարաց. զոր
ուրախութեամբ ընկալեալ էր Սանգոյ. զի ոչ ոք 'ի
մեծամեծ իշխանաց հակառակ կայր Չինկիզի, յոր-
ժամ եանց ընդ լեառն Բելգեան, և զմեծամեծս տան
իւրոյ ընկերացոյց նմա։

Իսկ Թագաւորն Հայոց յետ աւուրց ինչ աղաչեաց
զինքնակալն վասն դաշին խաղաղութեան և այլոց
իրաց՝ որոց ցանկայր. և 'ի հաճել ինքնակալին, ա-
ռաջի եդ նմա արքայն Հայոց զխնդիրս իւր։ Նախ
աղաչեաց զինքնակալն, զի հանդերձ ազգաւ իւրով
դարձցի 'ի հաւատս Քրիստոսի, և ընկալցի զմկրտու-
թիւն։ Երկրորդ զի խաղաղութիւն և բարեկամու-
թիւն մշտնջենաւոր հաստատեսցի 'ի մէջ նոցա։ Եր-
րորդ զի յամենայն երկիրս Թաթարաց կարիցեն շի-
նել եկեղեցիս քրիստոնէից. և Հայք ազատ լինիցին
յամենայն կապալաց և յայլոց ծանրութեանց։ Չո-
րորդ զի զսուրբ երկիրն և զսուրբ գերեզմանն առ-
ցէ 'ի ձեռաց Թուրքաց, և տացէ քրիստոնէից։ Հին-
գերորդ զի բարձցէ 'ի Բաղտատայ զխալիֆայն, որ
էր գլուխ դենի։ Վեցերորդ զի ամենայն Թաթարք
յօգնականութիւն իւր հասցեն 'ի խնդրել իւրում։
Եօթներորդ զի ամենայն գաւառք աշխարհին Հայ-
ոց, յորս տիրեալ էին Թուրքք, յինքն դարձուսցին։

Յայնժամ ինքնակալն Թաթարաց խորհուրդ ա-
րարեալ ընդ իշխանս և ընդ մեծամեծս իւր՝ ետ պա-
տասխանի արքային Հայոց. Զաղաչանս քո յանձն
առնումք. զիս տաց մկրտել, ընկալայց զքրիստոնական
հաւատս, և խնամ կալայց՝ զի ընկալցին ամենայն հպա-
տակք իմ. բայց առանց ամենայն բռնութեան։ Իսկ
երկրորդին՝ խաղաղութիւն լիցի 'ի մէջ մեր և ձեր
մշտնջենաւոր՝ փոխասողական և պաշտպանողական։
Նոյնպէս կամիմք, զի ամենայն եկեղեցիք քրիստոնէից՝
եկեղեցականք և աշխարհականք վայելեսցեն 'ի շնորհս
ազատութեան, և ոչ ոք իշխեսցէ նեղել զՀայս։ Զսբ
երկիրն՝ եթէ կարասցուք՝ անձամբ յարդեսցուք. այլ
քանզի մեք յայլ իրս եմք զբաղեալ, եղբայրն մեր Հու-
լաւուն առնիցէ զայդ, և զերկիրն սուրբ դարձուսցէ

'ի քրիստոնէայս ։ Զխալիֆայն բառնալ 'ի Բաղտա-
տայ յանձնեսցուք Պայտոնի զօրագլխի Թաթարաց
և իւրոցն բնակելոց 'ի թագաւորութեան երկրին
Թուրքաց և շուրջ զնովաւ ։ Թաթարք զամենայն
ձեռնտուութիւն արասցեն Հայոց . և զաշխարհս
որ սեփական են Հայոց, կամիմք զի անյապաղ տա-
ցին նոցա անդրէն . և ևս հրամայեմք, զի ամենայն ե-
ամրոցք և երկիրն զորս առաք, տացին արքային
Հայոց 'ի պաշտպանութիւն հայաստան աշխարհի
առանձին շնորհիւ ։

## ԳԼՈՒԽ ԻԴ

Յաղագս մկրտութեան Մանգոյ խանի ։

Արդ յետ մարդասէր առատութեամբ ընդունե-
լոյ Մանգոյի զխնդիրս Հայոց արքային, մկրտեցաւ
յատենադպրէ թագաւորութեան Հայոց, որ լեալ էր
եպիսկոպոս . ընդ նմին և տուն նորա, և այլ բազում
արք և կանայք պատուականք և մեծամեծք ։ Ապա
կարգեաց զայնոսիկ, ոյք զհետ երթիցեն Հուլաւայ
եղբօր իւրոյ 'ի թիկունս սրբոյ երկրին ։ Արդ չուե-
ցին Հուլաւոն և թագաւորն Հայոց 'ի միասին, մին-
չև անցին ընդ Փիսոն գետ ։ Հուլաւոն տիրեաց ա-
մենայն երկրին, և 'ի մէջ երից ամաց բովանդակ
թագաւորութեան՝ որ յայնժամ անտէր էր . և եհաս
մինչև 'ի թագաւորութիւն Ասասինաց . սոքա ան-
հաւատք էին, և առանց օրինաց կէին, և ըստ ակնար-
կութեան թագաւորին զանձինս սպանանելով ու-
նէին զբերդն՝ որ կոչիւր Դիկատոն, որ էր ամենայն
կարևորօք ամրացեալ, և կարի ամուր ։ Արդ հրաման
ետ Հուլաւոն միում 'ի զօրավարաց, զի բիւր մի զօրօք
Թաթարաց պաշարեսցէ զայն . զոր յետ քսանևօթն
ամաց առ պակասութեան պաշարաց նուաճեալ էր ։
Յայնմ վայրի թագաւորն Հայոց պատուեալ բազում
պարգևօք 'ի Հուլաւոնէ՝ դարձ առնէ յետ երեք և
կէս ամաց 'ի թագաւորութիւն իւր, առաջնորդեալ
'ի Պայտոնէ ընդ թագաւորութին երկրին Թուրքաց ։

## ԳԼՈՒԽ ԻԸ

*Յաղագս Հուլաւոնի եղբօր Մանգուի, որ աւերեաց զասորեստանեայս, և եմուտ 'ի Թագաւորութիւն Պարսից վասն հաւատոց Քրիստոսի:*

Հուլաւոն յետ կարգելոյ զարժանն և զլաւն 'ի պահպանութիւն Թագաւորութեան Պարսից, եւ գնաց 'ի գաւառն Հայոց աշխարհի Սոտլոք կոչեցեալ: Ընդ զամառն ողջոյն ետ զանձն 'ի սփոփութիւն և 'ի հանգիստ: Իսկ 'ի գալ ձմեռայնոյ պաշարեաց զքաղաքն Բաղդատ, յորում էր խալիֆայն վարդապետ և ուսուցիչ մահմէտական դենի: Նա կոչէր Հուլաւոն զերեսուն հազար Թաթարս՝ որ էին յերկրին Թուրքաց: Նա յետ հաւաքելոյ յամենայն կողմանց զազգ իւր՝ ետ յարձակիլ 'ի վերայ այնր քաղաքի, և փութով եառ զայն, Զերբակալ եղև և խալիֆայն, և ածաւ կենդանույն առ Հուլաւոն. և գտան այնչափ մեծութիւնք, զոր չէ մարթ հաւատալ թէ գտցին այլուրեք յաշխարհի. և եղև առումն Բաղդատ քաղաքի յամի 1258:

## ԳԼՈՒԽ ԻԹ

*Թէ որպէս եառ զԲաղդատ քաղաք Հուլաւոն, և եբարձ զխալիֆայն զգլուխ դենին Սարակինոսաց:*

Յետ առնելոյ Հուլաւոնի զոր ինչ կամեցաւ ընդ քաղաքն Բաղդատ, հրաման ետ ածել առաջի իւր զխալիֆայն, և դնել իւր յանդիման զամենայն գանձս նորա: Եհարց զնա Հուլաւոն, և ասէ. Ճա՞նաչես զայս ամենայն զոր տեսանես թէ քո էին: Նա ասէ. այո: Յայնժամ 'ի դէմս եած նմա Հուլաւոն. Ո՞ր է, զի դու այսչափ գանձուքդ ոչ կոչեցեր զվարձկան զօրս և զդրացիս, որպէս զի պահեսցեն զքեզ և զերկիրքո յերեսաց զօրութեան Թաթարաց: Նա ետ պատասխանի. Բանզի կարծեի թէ բաւա-

կան իցէ ազգն իմ։ Յայնժամ ասէ ցնա Հուլաւուն. Խալիֆայ կոչէիր՝ վարդապետ ամենեցուն, որոց հաւատամն՚ի դենն Մահմետի, և՚ի քո ձոխութեանց հեղձեալ լինէիր. արդ այդպիսի և այդչափ մեծ առաջնորդ չպարտի կերակրիլ այլովք կերակրովք. ուստի այս գումար անգին մեծութեան է կերակուր քո զոր այնչափ սիրեցեր, և անյագ ագահութեամբ պահեցեր։ Զայս ասացեալ, հրաման ետ դնել զխալիֆայն ՚ի սենեակ մի, և արկանել առաջի նորա զմարգարիտս և զոսկի, զի կերիցէ ՚ի նոցանէ որչափ և կամիցի. և ետ պատուէր, զի մի այլ կերակուր տացին նմա կամ ըմպելի. և այնպէս ողորմ մահուամբ վախճանեաց զկեանս իւր հէքն այն և ագահ ընչասէրն. և ոչ ևս յայնմ հետէ խալիֆայ եկաց ՚ի Բաղտատ։

## ԳԼՈՒԽ ԻԳ

Յաղագս մահու խալիֆային.

Յետ տիրելոյ Բաղտատայ և շրջակայ տեղեաց՝ բաժանեաց (Հուլաւուն) զգաւառսն զօրավարաց և վարչաց ըստ հաճոյս իւր. և հրաման ետ զի ամենայն ուրեք մարդասիրութիւն լիցի քրիստոնէից, և յանձնեցին ՚ի ձեռս նոցա պահպանութիւնք ամրոցաց և քաղաքաց. իսկ զՍարակինոսս էարկ ՚ի յետին ծառայութիւն։

Կինն Հուլաւունի Դուկոսսարոն անուն՝ քրիստոնեայ էր՚ի զարմէ Թագաւորաց եկելոց յարևելից տեսլեամբ աստեղն ՚ի ծննդեան տեառն։ Տիկինս այս յոյժ ջերմեռանդն քրիստոնեայ, խնդրէր հրաման կործանելոյ զտաճարս Սարակինոսաց. զոր և արար իսկ. և խափանեաց զամենայն հանդէսս տօնախըմբութեանց յանուն դենպետին. և զՍարակինոսս յայնպիսի եդ ծառայութիւն, զոր ոչ ոք այլ իշխեաց թօթափել այնուհետև։

# ԳԼՈՒԽ ԻԲ.

Յաղագս հալածանաց կարգացողացն մահմետական գենին:

Յայնժամ Հուլաւուն դադարեաց 'ի հանդարտութեան զամ մի. և առաքեաց առ Թագաւորն Հայոց գալ առ ինքն զօրօք իւրովք 'ի քաղաքն Ուռհա 'ի Թագաւորութեան Միջագետաց. քանզի խորհէր երթալ 'ի սուրբ երկիրն, զի տացէ զայն 'ի ձեռս քրիստոնէից: Յայնժամ Հեթումարքայ երկոտասան հազար հեծելովք և քառասուն հազար հետևակօք ճանապարհ արարեալ, եկն առ Հուլաւուն և ասէ ցնա. Տէր, սուլտանն Հալէպու 'ի ձեռին ունի զբովանդակ երկրին Ասորւոց զիշխանութիւն. և յայսմ Թագաւորութեան է քաղաքն Երուսաղէմ. վասն որոյ պէտք են նախ արկանել 'ի բուռն զգլխաւոր քաղաքն Հալէպու, և այնպէս եղիցիս տէր երկրին Ասորւոց ողջոյն: Հաւանեալ Հուլաւունի ընդ խորհուրդն, հրաման ետ պաշարել զՀալէպ քաղաք, որ էր յոյժ զօրաւոր, ամրացեալ պարսպօք, բազմամբոխ և բազմահարուստ: Հուլաւուն անվեհեր 'ի վերայ յարձակեցաւ հանդերձ ստորերկրեայ անցիւք և մեքենայիւք որ իշավայրի կոչին, և աղեղամբք և բաղխոտրովք, և այլ ևս ազգի ազգի զինուք 'ի քաղաք անդր. որ Թէպէտ և անառիկ Թուէր, այլ 'ի մէջ ինն աւուրց էառ զայն. և եգիտ զանհնարին բազմութիւն գանձուց: Էր և 'ի միջավայրի քաղաքին ամրոց, որ յետ երկոտասան աւուրց առաւ ականահատութեամբ. և այնպէս 'ի բուռն անկաւ բոլոր քաղաքն Հալէպու յամի 1250:

# ԳԼՈՒԽ ԻԹ

*Թէ որպէս Հուլաւուն ընդ լծով արկ զՀալէպ քաղաք և զսուրբ երկիրն մինչև յանապատն Եգիպտոսի ։*

Յետ այսորիկ առաւ քաղաքն Դամասկոսի համդերձ որդւովք և կնաւ Մելեքնասիր սուլդանին Հալէպու. որ առ 'ի դարձուցանելոյ զսոսա մատեաւ առ Հուլաւուն խնդրել ողորմութիւն. բայց 'ի դերև ել սուլդանն 'ի յուսոյն. և յղեցաւ 'ի Թագաւորութիւն Պարսից կնաւն և որդւովքն. որպէս զի յանդորրու պահեսցի երկիրն Ասորւոց ։ Ի լինել այսոցիկ Հուլաւուն ետ զմեծ մասն աւարին և զբազում ամրոցս մօտաւորս Թագաւորութեան իւրում 'ի ձեռս Թագաւորին Հայոց. որ ետ ամրացուցանել զնոսին ըստ կամս իւր ։

Յետ այսորիկ Հուլաւուն պարգևս առաքեաց դքսին Անտիոքայ, որ ազգական էր արքային Հայոց. և հրաման ետ դարձուցանել 'ի նա զամենայն գաւառս Թագաւորութեան իւրոյ, զորս Սարակինոսք ստացեալ ունէին. և այլ յոլով շնորհս առանձին ետ նմա ։ Զայսոսիկ 'ի կարգի եդեալ, դէպ ուղիղ խաղալ կամէր 'ի վերայ Երուսաղեմի, զի դարձուսցէ զայն 'ի քրիստոնեայս ։ Եւ ահա գուժկան եհաս առ Հուլաւուն հաւաստի լրով վասն մահուան եղբօր իւրոյ, և վասն պարապ մնալոյ աթոռոյ ինքնակալութեան Թաթարաց ։ Զայն իբրև լուաւ, 'ի խոր տրտմութ̃ի ընկղմեցաւ, և ոչ ևս խաղաց յառաջ. այլ ուղղեաց զճանապարհ իւր յարևելս կոյս, Թողեալ 'ի Թաւնիս (Դավրէժ) զորդի իւր. և կացոյց զօրավար Կիտողա անուն, զի պահեսցէ զԹագաւորութիւն երկրին Ասորւոց և առցէ զԵրուսաղէմ, և դարձուսցէ 'ի քրիստոնեայս ։

# ԳԼՈՒԽ Լ.

Ցաղագս Ղուպիլայ խանի հինգերորդ ինքնակալի Թաթարաց:

Այլ մինչև հասեալ էր նորա յերկիրն Պարսից, այդ եղև նմա, զի աւագանին և մեծամեծք եդեալ են զեղբայր իւր զՂուպիլա խան յաթոռ ինքնակալութեան Թաթարաց: Զայս լուեալ Հուլաւոնի՝ մինչդեռ էր 'ի Թաւնիս, եառ և զայն լուր, զի Պարտատ մեծաւ պատրաստութեամբ դիմեալ գայ ժառանգ լինել՝ եթէ հնար ինչ իցէ: Իբրև լուաւ Հուլաւոն, ժողովեաց զամենայն ամբոխ ազգի իւրոյ, և ել ընդ առաջ հակառակորդաց իւրոց 'ի վերայ սառուցեալ գետոյ իրիք. և եղև անդ սկիզբն ահագին մարտի: Այլ առ բազմութեան զօրաց և երիվարաց պատառեցաւ սառն, և ընկղմեցան յերկոցունց կողմանց երեսուն հազար Թաթարք. և մնացեալ բանակք երկաքանչիւր յետս դարձան մեծաւ տրտմութեամբ ընդ կորուստ իւրեանց: Իսկ Կիպողա, զոր եթող Հուլաւոն յԱսորիս և 'ի Պաղեստին, խաղաղութեամբ վարէր զկողմանսն զայնոսիկ, և շատ սիրէր զքրիստոնեայս. զի և ինքն էր 'ի սերնդոց երից Թագաւորաց եկելոց յերկրպագութիւն 'ի ծննդեան տեառն:

Սոյն այն ինչ սա ինքն Կիպողա խնամով աշխատ լինէր դարձուցանել զսուրբ երկիրն 'ի ձեռս քրիստոնէից, ահա բանսարկուն սերմանեաց 'ի մէջ նորա և քրիստոնէից կողմանցն զայսպիսի երկպառակութիւն. քանզի յերկրին Տէպէլ Փոռդիս, որ է 'ի տէրութե սիդոնացւոց, էին բազում գիւղք և աւանք, յորս Սարակինոսք սահմանեալ տուրս տային Թաթարաց. այլ դէպ եղև, զի արք ոմանք սիդոնացիք և Տէպէլ Փոռդիս ժողովեալք 'ի մի՝ գնացին 'ի գիւղս և յագարակս Սարակինոսաց, և յաւարի առին զնոսին, և զբազում Սարակինոսս սպանին, և զայլս հանդերձ բազում անասնովք վարէին 'ի գերութի: Իսկ քեռորդի ոմն Կիպողայ, որ անդ դէգերէր, սակաւ այրուձիով զհետ եղև քրիստոնէից, որ զայնպիսի իրս գործեցին, ասել

'ի կողմանէ քեռւոյն, զի Թողցեն զաւարն ։ Նայց ո֊մանք 'ի քրիստոնէից յարձակեալ 'ի վերայ նորա, ըս֊պանին զնա և զոմանս 'ի Թաթարաց ։ Օ այս լուեալ Կիտողայ, անյապաղ եառ զքաղաքն սիդոնացւոց, և կործանեաց զմեծ մասն պարսպին ։ Կորոյս և զոմանս 'ի քրիստոնէից փախուցելոց 'ի կղզին ։ Յայնմ հետէ ոչ Թաթարք վստահանային 'ի քրիստոնեայս, և ոչ քրիստոնեայք 'ի Թաթարս ։ Իսկ յետոյ Թաթարք 'ի դուրս վարեցան յերկրէն Ասորւոց, որպէս ասասցի 'ի ստորև ։

# ԳԼՈՒԽ ԼԸ

Ցաղագս մահուան Հուլաւոնի, և Թէ զիարդ սուլդանն եառ անդրէն զերկիրն Ասորւոց և Եգիպտոսի ։

Յայնմ վայրի յորում Հուլաւոն մարտ յարդարէր ընդ Պարտաստայ, որպ ասացաւ 'ի վեր անդր, սուլդանն Եգիպտոսի հանդերձ ժողովեալ զօրօք իւրովք ել յԵգիպտոսէ, և եկն 'ի Պաղեստին և 'ի Հենիալեկ, և սկսաւ տալ պատերազմ ընդ Կիտողայ զօրավարի Թաթարաց․ ուր սպանաւ Կիտողա ։ Իսկ Թաթարք ձողոպրեալք եկին 'ի Հայս․ և յայնմ հետէ երկիրն Ասորւոց միւսանգամ անկաւ ընդ տէրուԹեամբ Սարակինոսաց, բաց 'ի քանի մի քաղաքաց քրիստոնէից մերձ 'ի ծով ։ Օ այն լուեալ Հուլաւոնի՝ ժողովեաց զզօրս իւր և յղեաց առ արքայն Հայոց և առ արքայն Վրաց և առ այլ քրիստոնեայս արևելից, զի եկես֊ցեն պատրաստուԹեամբ ընդդէմ Սարակինոսաց և սուլդանին Եգիպտոսի․ և այն ինչ հաւաքեալ էր զզօրս իւր, ինքն անկաւ 'ի հիւանդուԹիւն, և մե֊ռաւ զկնի աւուրց հնգետասանից, որ եղև առիԹ մեծի վնասու, զի ոչ ևս առցի սուրբ երկիրն ։ Նու յաջորդեաց նմա որդի նորին Ապաղայ․ և ըստ աղա֊չելոյ նորուն՝ քեռի իւր Պուպիլա խան հաստատեաց զտէրուԹիւն նորա յամի 1264 ։

# ԳԼՈՒԽ ԼԲ

*Յաղագս Ապաղայի որդւոյ Հուլաւունի, որ պայազատեաց 'ի տէրու-թեան հօր իւրոյ։*

Ապաղայ էր այր իմաստուն, և աջողակի և բարե-բաստութեամբ վարեաց զիշխանութիւնն. բայց միայն չկամեցաւ քրիստոնեայ լինել, որպէս եղեալ էր հայր նորա. այլ էր կռապաշտ, և միշտ գրգռէր պատերազմ ընդ սահմանակիցս իւր։ Թաթարք որք միանգամ կարէին ձողոպրել 'ի ձեռաց նորա, փախ-չէին առ սուլդանն Եգիպտոսի, և խոյս տային 'ի ծանրութեանց՝ զորս դնէր 'ի վերայ նոցա. և սուլ-դանն ազդ արար Թաթարաց, զի որ գայ՝ ընդունե-լի լինի, և պարգևս առնու. այլ սովին պայմանաւ, զի յորժամ պատերազմ բացցէ Ապաղայ 'ի վերայ Եգիպ-տոսի, ինքեանք յարձակեսցին 'ի տէրութիւն նորա. վասն որոյ ոչ երբէք մարթացաւ Ապաղայ դիմել 'ի վերայ թագաւորութեան Եգիպտոսի. և սուլդանն Եգիպտոսի դիւրաւ կարաց տիրել երկրին Ասորւոց. և այսպէս կորուսին քրիստոնեայք զիշխանութիւնն Անտիոքայ և զյոլով ամրոցս Ասորւոց։

# ԳԼՈՒԽ ԼԳ

*Յաղագս սուլդանին Եգիպտոսի, թէ որպէս յաղթեաց Հայոց արքայի. զմի յորդւոց նորա կալաւ և զմիւսն սպան։*

Յետ այսորիկ այնչափ զօրացաւ Բնտուխտար սուլ-դանն Եգիպտոսի, զի և զթագաւորութիւնն Հայոց խարխալեցոյց. քանզի դէպ եղև արքային Հայոց մե-ծաւ զօրու երթալ առ Թաթարս. զոր գիտացեալ սուլդանին, յարձակեցաւ 'ի թագաւորութիւն Հայ-ոց, յղեալ զզօրս իւր զօրավարաւ փոխանակ իւր։ Իսկ որդիք արքային Հայոց իմացեալ զգալուստ Սա-րակինոսաց՝ ժողովեցին զամենեսին, ոյք կարող էին զէն առնուլ, և ելին ընդդէմ եգիպտացւոց, և սկսան

աջողութեամբ մղել զմարտն։ Այլ 'ի վախճանի 'ի պարտութիւն մատնեցաւ զօրն Հայոց. և յերկուց արքայորդւոց մին ձերբակալ եղև, և միւսն սպանաւ 'ի պատերազմի. և այնպէս արշաւեալ Սարակինոսաց ընդ թագաւորութիւն Հայոց սրով, զամենայն դաշտավայրս եղծին ապականեցին, և անբաւ աւարս 'ի բաց տարան անտի, որ եղև վնաս մեծ քրիստոնէից։ Այնուհետև մեծացաւ զօրութիւն թշնամեաց, և նուազեցաւ ոյժ թագաւորին Հայոց։ Իսկ թագաւորն Հայոց թէպէտ և միշտ ջանայր աւերել զզօրութիւն Սարակինոսաց, և բազում անգամ գունդ գործէր յորդորել զԱպաղայ և զԹաթարս 'ի քակտումն նոցունց, այլ Ապաղայ վասն մարտին ընդ սահմանակիցս՝ հրաժարեաց յոլովակի։ Իսկ իբրև ձեռնթափ եղև աստի թագաւորն Հայոց, յղեաց առ սուլտանն Եգիպտոսի՝ դաշնաւորիլ ընդ նմա, զի զորդի իւր ազատեսցէ 'ի բանտէ. և սուլտանն խոստացաւ թագաւորին այսու պայմանաւ, զի դարձուսցէ 'ի նա զբարեկամ իւր Սանկոլասար, զոր գերեալ ունէին Թաթարք. և զի տացէ անդրէն 'ի ձեռս իւր զամուրս Հալէպ քաղաքի։ Իսկ այսպէս սուլտանն դարձոյց զարքայորդին, և ընկալաւ զմտերիմն իւր. և թագաւորն դարձոյց սուլտանին զամուրն Տէմպէզաք, և զայլ երկու ամրոցս եւս քակել ըստ խնդրոյ սուլտանին։

Իսկ զկնի այսորիկ արքայն Հեթում բարեյիշատակ, որ զամս հնգետասան թագաւորեաց, յանձն արար զթագաւորութիւնն որդւոյ իւրում տեառն Լևոնի ազատելոյ յարգելանաց Եգիպտոսի. և ինքն հրաժարեալ 'ի շքոյ կենցաղոյս՝ եմուտ 'ի կրօն, և կոչեցաւ Մակար. և յետ սակաւ ժամանակի հանգեաւ խաղաղութեամբ յամի 1270։

## ԳԼՈՒԽ ԼԳ

Յաղագս Ապաղայի թէ որպէս եմուտ յԵգիպտոս և աւերեաց զերկիրն Թուրքաց։

Արքայն Հայոց Լևոն արթուն մտօք և իմաստուք թագաւորեաց, սիրելի յաչս իւրոցն և Թաթարաց. և

'ի բոլոր սրտէ գուն եդ եղծանել զՍարակինոսս։ Ուստի դէպ եղև, զի Ապաղայ արար խաղաղութիւն ընդ սահմանակիցս իւր, որ յերկար ժամանակէ հետէ թշնամութեամբ էին ընդ նմա. և յայնժամ սուլդանն Եգիպտոսի եմուտ յերկիրն Թուրքաց. և կոտորեալ զբազումս 'ի Թաթարաց տիրեաց յոլով գիւղից և աւանաց։ Եւ սարակինոս ոմն Փարւանա անուն յերկրին Թուրքաց՝ զօրագլուխ Թաթարաց, վտարանջեալ յԱպաղայէ, հնարէր կորուսանել և փախուցանել զամենայն Թաթարս։ Զայն իբրև լուաւ Ապաղայ, յետ հնգետասան աւուրց եհաս անդր։ Իսկ սուլդանն Եգիպտոսի լուեալ զգալուստ Թաթարաց, փութանակի խոյս ետ յերկրէն Թուրքաց, այլ ոչ կարաց փախչել. քանզի Թաթարք արագապէս ճանապարհ արարեալ, յարձակեցան 'ի վերջին թև բանակին՝ 'ի տեղին կոչեցեալ Քասպլանգ, 'ի մուտս երկրին եգիպտացւոց. և այնպէս 'ի վերայ դիմեալ կալան Թաթարք զերկու հազար այրուձի Սարակինոսաց, և առին ինչս բազումս. կալան և զհինգ հազար տունս Կորդուաց (կամ Քիւրտեց) որ բնակէին յայնմ գաւառի։ Իսկ Ապաղայ իբրև եհաս 'ի սահմանակցութիւն երկրին Եգիպտոսի՝ ոչ կամեցաւ այլ ևս յառաջ խաղալ վասն տօթոյն. զի գաւառն այն ջերմագին է յոյժ։ Եւ Թաթարք և զրաստք նոցա, որք 'ի յոյժ հեռաստանէ եկեալ էին շտապաւ, ոչ կարէին տանել վաստակոց և տապոյ։ Ուստի Ապաղայ դարձ արար յերկիրն Թուրքաց. և ետ ցրել և աւերել զամենայն տեղիս ապստամբեալս և անձնատուրս սուլդանին։ Իսկ զՓարւանա մատնիչն հանդերձ արբանեկօքն ըստ սովորութեան Թաթարաց ետ միջակտուր առնել. և հրաման ետ զի յամենայն կերակուրս զորս ունէր ուտել, դիցի 'ի մսոյ Փարւանայ մատնչի. յորմէ եկեր Ապաղայ հանդերձ աւագանւոյն. և ահա այսպիսի վրէժ խնդրեաց Ապաղայ թագաւորն 'ի Փարւանէ մատնչէ։

# ԳԼՈՒԽ ԼԶ

Յաղագս սուլդանին Եգիպտոսի դեղակուր եղելոյ։

Իբրև կատարեաց Ապաղայ զուխտ սրտի իւրոյ ընդդէմ երկրին Թուրքաց, և Թաթարք լցան աւարաւ և ձոխութեամբ, զոր ստացան յապստամբ Սարակինոսաց, կոչեաց առ ինքն զարքայն Հայոց, և ետ 'ի ձեռս նորա զթագաւորութիւնն երկրին Թուրքաց. զի հայր նորա և նա միշտ հաւատարիմ գտան Թաթարաց։ Իսկ թագաւորն Հայոց իմաստուն և խոհական՝ շնորհ կալաւ վասն պարգևին հրաժարելով յայնմանէ, իբրու անբաւական 'ի տնտեսել զերկու թագաւորութիւնս։ Վասն զի սուլդանն Եգիպտոսի զօրաւոր էր յոյժ, և մեքենայէր զկործանումն թագաւորութեան Հայոց։ Նա արքայն Հայոց խորհուրդ տուեալ էր Ապաղայի կարգաւորել զթագաւորութիւն երկրին Թուրքաց նախ քան զմեկնիլ իւր անտի, զի մի ոք 'ի Սարակինոսաց կարասցէ հաստել զտէրութիւն յերկրին Թուրքաց, և մի մնասցէ կասկած ապստամբութեան առ 'ի քէն։ Ընկալաւ Ապաղայ զխորհուրդ արքայի, և արգել Սարակինոսաց ունել զտէրութիւն յերկրին Թուրքաց։

Ի կատարել այսոցիկ աղաչեաց զնա արքայն Հայոց վասն ազատութեան սուրբ երկրին 'ի ձեռաց հեթանոսաց. և նա խոստացաւ, միանգամայն և խորհուրդ ետ թագաւորին Հայոց, զի դեսպանս արձակեսցէ առ պապն և առ ուղղափառ թագաւորս (վասն այսր բանի)։ Արդ Ապաղայ կարգեալ զոր ինչ արժան էր կարգել, դարձ արար 'ի թագաւորութիւն Խորասատէն, ուր թողեալ էր զընտանիս իւր։ Իսկ Բնտուխտար այն ինչ չարիս առնէր Թաթարաց, մահադեղով բարձաւ 'ի կենաց 'ի Դամասկոս. ընդ որ ուրախ եղեն քրիստոնեայք արևելից. իսկ Սարակինոսք տխրեցան, զի կորուսին զքաջ սուլդանն։ Նմա յաջորդեաց որդին իւր Մէլիք զատէ 'ի տէրութեանն. այլ յետ սակաւուց 'ի բաց վարեցաւ, և սուլդանացաւ Ալֆի։

# ԳԼՈՒԽ ԼՕ.

*Յաղագս Մանգոդանայ զօրավարի Թաթարաց, թէ որպէս խոյս ետ առ երկիւղի։*

Յորժամ Աբաղայ մարտ յարդարեր 'ի վերայ սուլդանին Եգիպտոսի, առաքեաց զեղբայր իւր զՄանգոդան յերկիրն Ասորւոց երեսուն հազար զօրօք Թաթարաց, զի կամ մարտիցէ, և կամ առցէ զտեղիսն, և տացէ քրիստոնէից 'ի պահել։ Սա երկու աւուր ճանապարհ արարեալ, յղեաց արս առ Թագաւորն Հայոց. որ եկն անյապաղ զօրօք իւրովք. և մտին յերկիրն Ասորւոց, և աւար հարին զամենայն տեղիս մինչև 'ի քաղաքն Համս, որ յաւուր յայսմիկ 'ի բազմաց կոչի Սեմէլ 'ի միջավայրի երկրին Ասորւոց։ Նախ քան զժամանել 'ի քաղաքն կայ դաշտ, ուր սուլդանն ժողովեաց զզօրս իւր ընդդէմ Թաթարաց։ Սարակինոսք մղեցին սաստիկ պատերազմ ընդ Թաթարս. Թագաւորն Հայոց վարէր զաջ թևն հանդերձ քրիստոնէիւք. ուստի դիմեաց ինքն 'ի վերայ ձախոյ թևի սուլդանին Եգիպտոսի, և 'ի փախուստ դարձոյց զթշնամիս եռօրեայ ճանապարհաւ մինչև 'ի քաղաքն Համս և անդր ևս. Ալմախ Թաթար զմիւս կողմն յաղթահարեաց, և փախստեայ տարաւ զՍարակինոսս ընդ երեքօրեայ ճանապարհ մինչև 'ի քաղաքն Պարա։ Եւ յորժամ բեկեալ համարեցաւ զզօրութիւն սուլդանին Մանգոդանն, որոյ չէր երբէք զփորձ առեալ այսպիսի պատերազմաց, զանգիտեալ յոմանց Սարակինոսաց Ս խուին կոչեցելոց, յետս կասեցաւ, եթող ելից զասպարէզ յաղթութեանն, և 'ի բաց արձակեաց զարքայն Հայոց, և զմիւս զօրագլուխ իւր, որոց հալածեալ էր զթշնամիս։

Իսկ սուլդանն՝ որ համարէր զամենայն ինչ կորուսեալ, իբրև ետես զդաշտ պատերազմին թափուր և բոլորովին լքեալ թողեալ, ել 'ի լեռնակ մի չորիւք սպառազինօք, և կալաւ զտեղի։ Իսկ Թագաւորն Հայոց 'ի դարձին իւրում 'ի վանելոյ զթշնամիս՝ իբրև ոչ եգիտ զՄանգոդանն, յապշութիւն կրթեցաւ,

և գնաց զկնի նորա ։ Իսկ Ալմաք՝ որ վանեալ էր զՍարակինոսս՝ զաւուրս երկուս սպասեաց Մանգոդանայ. և իմացեալ զմեկնիլ նորա՝ փութացաւ և ինքն երթալ զհետ նորա, թողեալ զյաղթութիւնն. և եկեալ գտին զՄանգոդան յափն Եփրատայ, զի մնայր նոցա ։ Յետ այսորիկ Թաթարք դարձան 'ի տեղի իւրեանց ։ Իսկ արքայն Հայոց յայնմ ճանապարհի հանդերձ զօրօք իւրովք բազում ինչ կրեաց. զի վասն երկայնութեան ճանապարհաց և նուազութեան իրաց՝ երիվարքն իսպառ յոգնեցան, զի ոչ կարէին գնալ. և այնպէս զատուցեալք յիւրեանց գնալով ընդ անկոխ վայրս, 'ի Սարակինոսաց եղելոց յայն կողմանս անողորմաբար հարեալ լինէին. ուստի մեծ մասն զօրուն կորեաւ, և գրեթէ իշխանաւորք ամենայն. և այս ձախողակ գործ Մանգոդանայ դիպաւ յամի 1282 ։

Իբրև գիտաց զայս ամենայն Ապաղայ խան, ժողովեաց յամենայն կողմանց զամբոխ իւր. և յետ պատրաստ լինելոյ՝ ահա որդի բելիարայ սարակինոս ոմն եկն առ արքայն Պարսից, և ոմանց՝ որ մտերիմ ծառայք էին Ապաղայի, ետ բազում կաշառս, և բանս եդ ընդ նոսա, զի 'ի միում աւուր մահադեղ մատուակեսցեն Ապաղայի և եղբօր նորա Մանգոդանայ. որ և եղև իսկ. և երկոքին յետ ութ աւուրց մեռան. և ստուգութիւն բանիս 'ի նոցունց իսկ ապիրատաց խոստովանեալ եղև. և այս զրաւ կենաց եղև յամի 1282 ։

## ԳԼՈՒԽ ԼԶ.

Յաղագս Տանգոտարայ երկրորդ որդւոյ Հուլաւունի, որ յաջորդեաց Ապաղայի 'ի Թագաւորութեան ։

Զկնի մահուն Ապաղայի ժողովեցան Թաթարք և կացուցին տէր 'ի վերայ իւրեանց զՏանգոտար զեղբայրն Ապաղայի ։ Սա յաւուրս մանկութեան իւրոյ մկրտեալ էր, և Նիկողայոս կոչեցեալ. բայց յետոյ առ կենաց կցորդ լինելոյ Սարակինոսաց՝ զորս սիրէր, սարակինոս եղև, և կամեցաւ կոչիլ Մահումէտ խան. և ամենայն ջանիւ դարձոյց զԹաթարս

'ի կրօնս Մահմետի. և որոց չիշխէր բունն առնել, պարգևս և պատիւս տայր. և այնպէս անհամար Թաթարք սարակինոսացան: Ապա հրաման ետ սա, զի ամենայն եկեղեցիք քրիստոնէից աւերեսցին. և զի մի քրիստոնեայք իշխեսցեն այլ ևս քարոզել զօրէնս կամ զվարդապետութիւնս Քրիստոսի. տայր հրապարակաւ քարոզել զՄահմետ. և ետ 'ի բաց տարադրել զքրիստոնեայս. և 'ի քաղաքն Դաւրէժ ետ աւերել խսպառ զեկեղեցիս քրիստոնէից: Յղեաց և առ սուլդանն Եգիպտոսի, և հաստատեաց ընդ նմա դաշն և ուխտ խաղաղութեան. և խոստացաւ զամենայն քրիստոնեայս իւրոյ տէրութեան ստիպել 'ի սարակինոսութիւն, կամ բառնալ զգլուխս նոցա: Ուստի Սարակինոսք լցան ամենայն խնդութեամբ. իսկ քրիստոնեայք տրտմութեամբ և ահիւ գնային, և ոչ գոյր նոցա այլ հնարք, բայց միայն կարդալ յօգնութիւն զողորմութիւնն այ. քանզի տեսանէին զհալածումն քրիստոնէից առաւել քան զամենայն ժամանակաց:

Յաւել առաջել նա ինքն Մահումետ առ Թագաւորն Հայոց և առ Թագաւորն Վրաց և առ այլ քրիստոնեայս, զի անյապաղ 'ի նա մատչիցին. բայց քրիստոնեայք եդին հաստատութեամբ 'ի մտի կամակար մեռանել, քան հնազանդիլ անօրէն հրամանաց. զի ոչ այլ կայր խորհուրդ: Մինչդեռ յայսմ անձկութեէին հաւատացեալք, ահա տէր՝ որ ոչ երբէք թողու զյուսացեալս իւր, ետ մխիթարութի ամենայն քրիստոնէից. քանզի եղբայր սորին Մահումետի, և եղբօրորդի (կամ քեռորդի) նորա Արղուն՝ հակառակք այնպիսի չար գործոց մտեան առ Կուպիլա խան՝ մեծ ինքնակալն Թաթարաց, և զեկուցին թէ Մահումետ թողեալ զշաւիղս նախորդաց իւրոց՝ սարակինոս եղև, նոյնպէս և զԹաթարս ձգեաց զհետ իւր:

Զայն իբրև լուաւ Կուպիլա խան, խռովեցաւ յոյժ. և պատուէր յղեաց առ Մահումետ ուղղել զանձն, և 'ի բաց կալ յայնպիսի չարեաց. ապա թէ ոչ՝ խաղացից, ասէ, 'ի վերայ քո: Իսկ Մահումետ անտես արարեալ զհրամանաւ ինքնակալին՝ լցաւ բարկութեամբ և ցասմամբ, և սպան զեղբայր իւր: Զնոյն

կամեցեալ առնել և ընդ Արղուն, զօրու մեծաւ դի-մեաց 'ի վերայ նորա։ Եւ Արղուն անկարող գտեալ զդէմ ունել նորա, խոյս ետ 'ի լերինս, և անկաւ 'ի բերդ մի ամուր. զոր եկն պաշարեաց Մահումէտ զօ-րօք իւրովք, մինչև անձնատուր եղև նմա Արղուն այսու պայմանաւ, զի անվնաս ունիցի զինքն և զտէ-րութիւն իւր։ Մահումէտ ետ զԱրղուն 'ի ձեռս գունդստապլի իւրոյ և մեծամեծաց իւրոց. և ինքն դարձ արարեալ 'ի Պաւրէժ, ուր թողեալ էր զորդիս և զկանայս, պատուիրեաց գունդստապլի և մտեր-մաց իւրոց սպանանել զԱրղուն, և զգլուխ նորա առ ինքն առաքել։

Այլ ահա արդար դատաստանն այ, որ պահէ զան-մեղս և զմրցողս վասն ճշմարիտ հաւատոյ՝ տնտեսեաց զի 'ի մէջ անօրէն սպանողաց գտցի արդար ազատա-րար, դաստիարակն Ապաղայ, հայրն Արղունի, այր քաջ. որոյ 'ի գութ շարժեալ՝ զէն վերացոյց, եհար սատակեաց զգունդստապլն և զարբանեակս նորա սրով 'ի գիշերի. և զԱրղուն զերծուցեալ 'ի մահուա-նէ, կացոյց տէր և վարիչ 'ի վերայ ամենեցուն. ուս-տի կէսք սիրով և կէսք առ ահի միաբանեալ ծանեան զնա տէր իւրեանց։ Զայս վճարեալ աճապարեաց զհետ Մահումէտի, և կալաւ զնա, և ետ միջակտուր առնել. և այնպէս բարձաւ 'ի միջոյ թշնամին հաւա-տոց և հաւատացելոց յետ երկամեայ ժամանակաւ յանիրաւի ունելոյ նորա զերկիրն։

## ԳԼՈՒԽ ԼԸ.

*Յաղագս Արղունի որդւոյ Ապաղայի, թէ որպէս տէր եղև Թաթարաց յետ մեռանելոյ Տանգատարայ։*

Յամի տն 1285 Արղուն չկամեցեալ խան կոչիլ, առաքեաց դեսպանս առ մեծ խանն ինքնակալ Թա-թարաց՝ պատմել զամենայն անցսն. ընդ որ մեծա-պէս հաճեալ մեծի խանին, յղեաց զաւագս տան իւ-րոյ՝ հաստատելով զտէրութիւն Արղունի. և յայնմ հետէ մեծարեցաւ նա յամենեցունց, և անուանեցաւ խան։ Արղունս այս տեսլեամբ գեղեցիկ՝ սիրեաց

զքրիստոնեայս, և զտէրութիւն իւր տնտեսեաց քա-
ջութեամբ և իմաստութեամբ, և նորոգեաց զեկե-
ղեցիս զատ ՚ի Մահումէտայ աւերեալս. ուստի ար-
քայն Հայոց և արքայն Վրաց հանդերձ այլովք քրիս-
տոնէիւք չոքան առ նա, և աղաչեցին զնա, զի խոր-
հրդով և օգնականութեամբ իւրով տացէ զսուրբ
երկիրն ։ Իսկ նորա խորհուրդ արարեալ՝ ետ պա-
տասխանի, զի արասցէ զամենայն հնարաւորս ըստ
կամս նոցա. ուստի խաղաղութիւն արար ընդ սահ-
մանակիցս ։ Իսկ այն ինչ կամէր կատարել զիւր խոս-
տումն՝ վախճանեաց զկեանս իւր ՚ի չորրորդ ամի թա-
գաւորութեան իւրոյ. որում յաջորդեաց եղբայր
նորա Քէղայիդ այր անպիտան, որպէս ունիմք պատ-
մել ։

## ԳԼՈՒԽ ԼԹ

Յաղագս Քէղայիդայ յաջորդին Արղունայ ։

Յամի տեառն 1288 յետ մահուն Արղունայ խա-
նի՝ եղբայր նորա Քէղայիդ չունէր օրէնս ինչ կամ
հաւատս, և զինուք էր անզօր. անձնատուր բոլորո-
վին ՚ի զեխութիւնս և ՚ի մեղս, վարէր կեանս որպէս
անասուն անբան, ծառայ պոռնոյ և որովայնի ։ Թա-
գաւորեաց ամս վեց ատելի իւրոցն, և արհամարհ
յաչս այլոց. մինչև խեղդամահ եղև յաւագաց իւ-
րոց ։ Յետ մահու նորա կալաւ զտէրութիւնն Պայ-
տոն ազգական նորուն ։ Պայտոնս այս եղև հաւատա-
ցեալ ՚ի Քրիստոսի, և ուղիղ սրտիւ. և արար բազում
շնորհս քրիստոնէից. այլ փութով վախճանեցաւ ։

## ԳԼՈՒԽ Խ

Յաղագս Պայտոնի տեառն Թաթարաց, և թէ որպէս մեռաւ ։

Յամի 1290 սկսաւ Պայտոն թագաւորել. զբա-
զում եկեղեցիս քրիստոնէից շինեաց. խափանեաց ՚ի

մէջ Թաթարաց քարոզել զդենն Մահմէտի. և զի յոլովք էին յարեալ՚ի Մահմէտ՚դժկամակ եղեն ընդ այն հրամանն. ուստի գաղտ պատգամաւորս յղեցին առ Ղազան որդի Արղունայ, խոստանալով նմա տալ զտէրութիւնն, եթէ հրաժարեսցի՚ի քրիստոնէական հաւատոյ. զոր և արար իսկ, և եղև ուրացող։ Իսկ Բայտոն ժողովեաց զամբոխ իւր երթալ ձերբակալ առնել զՂազան. այլ հասեալ՚ի տեղի ճակատու՝ թողեալ լքաւ յամենեցուն յարելոց՚ի Մահմէտ. և այնպէս փախեաւ, և մեռաւ՚ի փախըստեան։

## ԳԼՈՒԽ ԽԸ.

*Յաղագս Ղազանայ որդւոյ Արղունի թէ որպէս զբռնամբ ած զտէրութիւնն. և յաղագս գործոց նորա։*

Զկնի մահուն Բայտոնի՝ Ղազան եղև տէր Թաթարաց. և կացեալ՚ի խոստման իւրում, խիստ եցոյց զանձն առ քրիստոնեայս. այլ յետ հաստատելոյ զտէրութիւնն՝ սկսաւ պատուել և սիրել զքրիստոնեայս, և եբարձ զմեծամեծս՝ որք հրապուրէին զնա՚ի դենն Սարակինոսաց։ Յետ այնորիկ պատուէր ետ իւրոցն Թաթարաց վառիլ՚ի զէն. նոյնպէս և թագաւորին Հայոց և Վրաց և այլոց քրիստոնէից. քանզի խորհէր պատերազմ տալ ընդդէմ սուլդանին Եգիպտոսի։

Յաւուրս գարնայնոյ ժողովեաց Ղազան զզօրս իւր, և գնաց հանդէպ Համէս քաղաքի՚ի միջավայրի երկրին Ասորւոց, ուր սպասէր նմա Մէլիքնազար սուլդանն Եգիպտոսի իւրովքն հանդերձ։ Ղազան թողեալ զքաղաքն՝ մխեցաւ՚ի կռիւ ընդ սուլդանին և ընդ զօրս նորա. ուստի հրաման ետ իւրոցն դադարել՚ի դաշտի ձիովք իւրեանց, զի հանգիցեն յաշխատութենէ ճեպընթաց ուղւոյն։ Փախուցեալ գայ առ Ղազան՝ Գալփաք սարակինոս ծառայ սուլդանին, զոր կամէր նա դնել յարգելանս բանտի վասն համարձակութեան։ Եւ Ղազան պատուասիրեաց զԳալփաք, յոր վստահ էր յոյժ. այլ

նորա մատնիչ գտեալ, խրատ ետ սուլտանին աճապարել սկիզբն առնել մարտի, զի կարի խոնջ էին երիվարք Պազանայ։ Ընկալաւ սուլտանն զայն խրատ, և փութացաւ գալ. զոր լուեալն Պազանայ ազդ արարին նմա. և նա ազդեաց իւրոցն՝ ճակատիլ արիաբար, և ընդ առաջ ելանել թշնամեաց։ Պազան անվեհեր քան զառիւծ յառաջ խաղաց ընդդէմ Սարակինոսաց. և հրաման ետ զօրականաց ընդ իւր եղելոց՝ իջանել յերիվարաց, և զիւրև պատել որպէս զպարիսպ, և նետաձիգ լինել՚ի թշնամիս, ոյք սանձարձակ եկեալ էին 'ի վերայ իւր. և այնպէս Թաթարք միաբան արձակեցին զնետս, և զյոլով ձիս խոցոտեցին. իսկ Սարակինոսք, որ զկնի կային, ամ թափով ուժգին յարձակեցան ցգահավիժումն։ Սուտի 'ի բազմութենէ անտի Սարակինոսաց՝ սակաւք փախստեամբ զերծան, և բազումք յոյժ 'ի նետից Թաթարաց կարեվէր հարեալ սատակեցան։

Զայն տեսեալ սուլտանին՝ վաղ ընդ փոյթ յետս կոյս կասեցաւ. զոր իմացեալ Պազանայ՝ հրամայեաց իւրոցն աշտանակել յերիվարս, և արիաբար յարձակիլ՚ի թշնամիս. և ինքն նախ սկիզբն արար մարտին. և այնչափ տոկաց 'ի նմին՝ սպանանելով զթշնամիս, մինչև Թաթարքն առ հասարակ ճակատեալք՝ եկին 'ի մարտ պատերազմի, և կռուէին յելից անտի արեգական ցիններորդ ժամ։ Յայնժամ սուլտանն անկարացեալ զդէմ ունել յանդուգն քաջութեան Պազանայ, դարձաւ 'ի փախուստ; և ամենայն Սարակինոսք ընդ նմա. և Պազան զհետ պնդեցաւ՝ կոտորելով զթշնամիս ցաղջամուղջ գիշերոյ. և այնչափ եղև հարուած Սարակինոսաց, զի երկիրն լցաւ դիակամբք սպանելոց։ Յետ ճակատամարտիս զայն գիշեր ուրախութեամբ և ցնծութբ հանգեաւ Պազան վասն յաղթութեան եղելոյ յօգնականութենէն այ. այն է յամի տեառն 1310 յաւուր չորեքշաբաթի նախ քան զտօն ծննդեան ան։

# ԳԼՈՒԽ ԽԲ

*Յաղագս յաղթութեան, և բաժանման աւարին:*

*Յետ այսորիկ պատուէր ետ Ղազան արքային Հայոց, և Մուղայի զօրավարին Թամթարաց, զի մետասան հազար հեծելազօրու զհետ պնդեսցին սուլդանին Եգիպտոսի մինչև յանապատն հեռի անդր քան զերկոտասան իջևանս. որ և յառաջ քան զծագել արեգական եհաս ամենայն արագութեամբ: Յետ երից աւուրց յետս կոչեաց զթագաւորն Հայոց, և Մուղայի յանձն արար հետամուտ լինել թշնամւոյն: Իսկ սուլդանն զցայգ և զցերեկ հեծեալ 'ի տաճիկ ուղտս, առաջնորդութեամբ ոմանց Բետուինաց, և սքանչելապէս եմուտ 'ի Բաբելոն. իսկ այլ Սարակինոսք փախչէին յո՛ և կարէին. մեծ բազմութիւն նոցա փախեաւ ընդ ճանապարհ Տրիպօլւոյ, ոյք 'ի ձեռն քրիստոնէից բնակելոց 'ի լերինն Լիբանանու անխնայ կոտորեցան:*

*Իբրև դարձաւ արքայն Հայոց առ Ղազան, եգիտ զի քաղաքն (Եգիպտոսի 'ի ձեռս) Ղազանայ անձնատուր էր եղեալ հանդերձ ամենայն գանձու և զօրու սուլդանին. ուր էր ճոխութիւն անբաւ. զոր Ղազան ճոխաբար առատաձեռնութեամբ բաժանեաց 'ի մէջ իւրոցն, և հարստացոյց զնոսա: Ես եղբայր Հեթում զայս ամենայն աչօք տեսի, զի առաջիկայ էի: Այն էր սքանչելի, զի Ղազան այր փոքրահասակ և տգեղ դիմօք 'ի միում աւուր խոյտակեաց զթշնամիս, և յաւուր երկրորդի զամենայն ճոխութիւնս առատաձեռնօրէն բաշխեաց 'ի մէջ իւրոցն, պահեալ վասն իւր զմի ևեթ դաշոյն, և ըղգրուածս Եգիպտոսի:*

*Յետ հնգից աւուրց զոր ետ հանգստեան, դէպուղիղ չոգաւ 'ի Դամասկոս. զոր չգիտելով դամասկացւոց՝ զահի յոյժ հարան. ուստի խորհուրդ արարեալ՝ յղեցին առ Ղազան ընծայս և զբանալիս քաղաքին՝ խնդրելով ողորմութիւն: Նա զամենայնն*

մարդասիրութեամբ ընկալաւ, պատուէր տուեալ զի բերցեն զբաւական պէտս բանակին, և խոստացեալ չկամել կործանել զքաղաքն, այլ պահել զայն 'ի պէտս սենեկի իւրոյ։ Իսկ ինքն Ղազան եհար զխորանս իւր առ գետովն Դամասկոսի, արգելեալ զի մի ոք սասանեսցէ քաղաքին. և դամասկացիք առաքեցին զբազում ընծայս, և զամենայն պէտս լիուլի։ Մնաց անդ Ղազան զաւուրս չորեքտասան, բաց 'ի մետասան հազարաց ոյք դեգերէին 'ի Ղակքարա, սպասեալք հրամանի կամ գալստեան Ղազանայ.

## ԳԼՈՒԽ ԽԳ

Յաղագս Խափշիկ մատնչի, որ դարձոյց զերկիրն 'ի սուլդանն։

Եւ ահա լուր եհաս առ Ղազան թէ Պայտոն ազգականն իւր մտեալ է 'ի Պարս, և բազում զեան առնէ Ղազանայ. արդ զի մի առաւել վնաս առնիցէ՝ խորհեցաւ դարձ առնել առ իւրսն. վասն որոյ հրաման ետ Ղութլուղայ սպարապետի զօրացն՝ մնալ յԱսորիս 'ի պահպանութիւն երկրին. ապա կարգեաց վերակացուս քաղաքաց, և զքաղաքն Դամասկոսի յանձնեաց 'ի Խափշիկ։ Եւ կոչեալ առ ինքն զԹագաւորն Հայոց ծանոյց զոր ինչ պատուիրեալ էր Ղութլուղայ, զի ամենայն գաւառք զորս ցայն վայր կալեալ էին քրիստոնեայք, տացին անդրէն 'ի նոսա. և զի ունի տալ նպաստ 'ի նորոգութիւն ամրոցաց։

Զայսոսիկ կարգեալ, եմուտ 'ի Միջագետս առ Եփրատ գետով, պատուէր յղեաց առ Ղութլուղ զի թողեալ զՄուղայ քսան հազարօք Թաթարաց՝ հանդերձ մնացելովքն փութասցի գալ առ ինքն. որ և եղև իսկ։ Ուստի Մուղայ պահեաց զԱսորիս. այլ ըստ սադրելոյ Խափշկի՝ Մուղայ էանց 'ի կողմանս Երուսաղէմի 'ի տեղին Կաւր, որպէս զի գտցէ ճարակ երիվարաց և զայլ կարևորս։ Ի հասանել ամարայնոյ Խափշիկն յղեաց պատգամաւորս առ սուլդանն Եգիպտոսի դառնալ 'ի Դամասկոս. զի ես տաց, ասէ,

'ի ձեռս քո զԴամասկոս և զայլ տեղիս երկրին Ասո-
րւոց ։ Զայս խոստումն առեալ սուլտանին, ինքն
ևս խոստացաւ Ղսափչաքի, զի թէ կայցէ 'ի խոստմանն,
տացէ նմա յաւէժաբար զտէրութիւն Դամասկոսի,
և զմասն գանձու իւրոյ, և զքոյրն 'ի կնութիւն ։

Յետ սակաւուց Ղսափչաք մատնիչն ապստամբե-
ցոյց զամենայն Թաթարս, քանզի գիտէին՝ զի այլ
Թաթարք չկարեն գալ, և ոչ օգնականութիւն տալ
իւրոցն. վասն զի երիվարք չկարեն արշաւել 'ի տօթի
անդ ։ Զայն տեսեալ Մուղայի, և անկարացեալ
ընդդէմ կալ նոցա առ սակաւութեան զօրաց, դար-
ձաւ 'ի Միջագետս՝ ազդ առնել Ղազանայ զեղեալ-
սն ։ Իսկ 'ի գալ ձմերայնոյ զօր գումարեալ, արձա-
կեաց անդրէն զԿոթլուղ երեսուն հազար հեծե-
լովք Թաթարաց, հրաման տուեալ, զի յորժամ հաս-
ցէ յԱնտիոք, կոչեսցէ զթագաւորն Հայոց և զայլ
քրիստոնեայս. և յորժամ Ղազան գայցէ զօրու ծա-
նու, մտցէ 'ի թագաւորութիւն երկրին Ասորւոց ։

Զամենայնն կատարեաց Կոթլուղ. եկն արքայ
Հայոց զօրօք իւրովք. նոյնպէս և քրիստոնեայք թա-
գաւորութեանն Կիպրոսի մինչև 'ի կղզին Անտերա-
դայ, ուր էր Տիւրէն եղբայր արքային Կիպրոսի զօ
րավար զօրաց եղբարբք իւրովք հանդերձ ։ Եւ այն
ինչ ամենեքին պատրաստ կային, եկն լուր հիւան-
դութեան Ղազանայ, մինչև անյոյս լինել բժշկաց
յառողջութենէ նորա ։ Վասն որոյ Կոթլուղ դարձ
արար առ Ղազան, և քրիստոնեայք 'ի տեղիս իւ-
րեանց. այսու օրինակաւ թողան իրք առման սուրբ
երկրին. և այս եղև յամի 1350 ։

## ԳԼՈՒԽ ԽԴ.

Յաղագս մեծի վնասուն՝ զոր կրեցին Թաթարք 'ի դաշտին
Դամասկոսի առ յորդութեան ջուրց ։

Յամի 1303 Ղազան զօր գումարեալ բազում
յոյժ, եհաս 'ի գետն Եփրատ, խորհելով մտանել
յերկիրն Ասորւոց, և բառնալ իսպառ զՄարակի-
նոսս, և զերկիրն սուրբ դարձուցանել անդրէն 'ի

քրիստոնեայս ։ Իսկ Սարակինոսաց զանգիտեալ 'ի զալստենէ Պաղանու, զամենայն ինչ հրձիգ արարին առաջի աչաց իւրեանց, կուտեալ զարմտիս և զանասունս, զի եկեալքն մի գտցեն պաշար և բուտ ։ Իբրև գիտաց Պաղան զոր արարին հագարացիքն, խորհեցաւ մնալ զայն ձմեռն առ Եփրատաւ. և 'ի մուտս գարնայնոյ ընդ սկսանիլ աճել խոտոյ ճանապարհ առնել. վասն զի առաւել հոգ ունին Թաթարք վասն ձիոց իւրեանց՝ քան վասն անձանց. քան զի ինքեանք սակաւուք շատանան ։

Յայնժամ յղեաց կոչեաց Պաղան զարքայն Հայոց, որ եկեալ բանակեցաւ առ գետովն. և այնչափ էր բազմութիւն զօրաց, զի երկօրեայ ձգեալ լինէր ընդ երկայն 'ի Կաքաւ բերդէ մինչև յամուրն Լաբիր. որք ինքնին անձնատուր եղեն Պաղանայ առանց յարձակման ։ Մինչդեռ այսպէս դեգերէին 'ի տեղւոջն, պատմեցաւ Պաղանայ՝ թէ նախասացեալ Պայտոնն վերստին մտեալ իցէ յերկիրն Պաղանու, և զեան արարեալ բազում ։ Այնմ իրի Պաղան դարձ արարեալ 'ի տեղի իւր, եթող 'ի ձեռս Պոթլուղայ զօրավարի մետասան հազար Թաթարըս ։

Արդ Պոթլուղ իւրովքն հանդերձ, և Թագաւորն Հայոց զօրօք իւրովք մտին յերկիրն Ասորւոց, աւար հարին զամենայն. և եկեալ 'ի Համս քաղաք՝ պաշարեցին զքաղաքն, և առին զայն, և կոտորեցին զամենայն Սարակինոսս. ապա եկին 'ի Դամասկոս՝ պաշարել և զայն ։ Իսկ քաղաքացիքն պատգամաւորս յղեցին աղաչելով, զի զերիս աւուրս ներեսցեն նոցա. և հաւանելի եղև խնդիր նոցա ։ Եւ Թաթարք յառաջախաղացք կալան զոմանս 'ի Սարակինոսաց, և առաքեցին առ Պոթլուղ, որ մարդասիրութեամբ ընկալաւ զնոսա. և լուեալ 'ի նոցանէ՝ թէ իբր երկու իջևանօք աւուրց մերձ կան Սարակինոսք հազար երկերիւր, որք օր ըստ օրէ սպասեն գալստեան սուլդանին, անդր եհաս, զի յեղակարծուց ձերբակալ արասցէ զնոսա. այլ 'ի ժամանել 'ի տեղին՝ լուաւ թէ եկեալ է սուլդանն իւրովք. և ոչ կամեցաւ դանդաղել, այլ դիմել ընդդէմ թշնամեաց ։ Բայց նոքա

'ի լճէն՝ առ որով կային, արձակեցին զՋուրս, որ կապ-
միացին վտակ՝ ընդ որ չկամեցան անցանել Թաթարք.
այլ յետ անցանելոյ Ղազանին հանդերձ Թագաւո-
րաւ Հայոց՝ զհետ գնային և ինքեանք. իսկ սուլ-
դանն ոչ յարձակեցաւ 'ի վերայ նոցա, այլ կայր առ
լերամբ և լճիւ. ոչ շարժեցաւ և յաւուրն երկրորդի,
թէպէտ և Թաթարք դիմէին 'ի վերայ նորա. վասն
զի ինքն կայր յանքոյթ վայրի՝ պաշտպանելով անձին
և իւրոցն: Այլ 'ի տևել մարտին յառաւօտէ մինչև
ցիններորդ ժամ, առ պակասութե Ջրոց՝ զոր ոչ գտին
յարբումն ոչ 'ի գիշերի և ոչ 'ի տուէ, տարժանեալք
խոնջութե և ծարաւով՝ մեկնեցաւ մին զկնի միւսոյ՝
'ի գունդս գունդս և 'ի Ճակատս կարգեալ, մինչև
եկին 'ի դաշտն Դամասկոսի և կարգեցան անդ առ-
նուլ զհանգիստ մինչև ժամ լիցի Ճակատամարտի:
Իսկ դամասկացիք յայնմ գիշերի 'ի դաշտ անդր
ուղղեալ էին զՋուրս գետոյն. ուստի ամենքին խը-
ռովեցան շփոթեցան, և կորուսին զրաստս բազումս
և զէնս. և ընդ այգանալ աւուրն Ճողոպրեցան 'ի
Ջուրցն վտանգէ. միայն թէ ոչ սակաւ զինուորք կո-
րեան: Եւ քանզի 'ի յորդելոյ Ջուրցն անպիտանա-
ցեալ էին զէնք նոցա և նետք, դիւրաւ լինէր նոցա 'ի
պարտութիւն մատնիլ, եթէ թշնամիք յարձակէին
'ի նոսա, և գրեթէ ոչ ոք ապրէր:

Իսկ Թաթարք՝ որ ընդ ափն Եփրատայ երթայ-
ին, յետս դարձան. և քանզի գետն բարձրացեալ
էր յերեսաց անձրևաց, հարկ եղև ձիովք լուղիլ ան-
ցանել. ուստի կորեան բազումք 'ի Թաթարաց, 'ի
Հայոց և 'ի Վրաց. և ըստ դիպաց այլք դարձան 'ի
տեղիս իւրեանց. յորոց միջի գտաւ և պատմաբանս:
Յետ այսորիկ Թագաւորն Հայոց եկ գնաց առ Ղա-
զան 'ի քաղաքն Նինուէ, ուր կայր նա. զոր և պա-
տուով ընկալաւ Ղազան և ելից զեղեալ վնասն, տա-
լով նմա հազար Թաթարս, և 'ի տէրութենէն եր-
կրին Թուրքաց կարգեաց նմա քանակ մի դրամոց:
Այսպէս դարձ արար արքայն Հայոց 'ի Թագաւո-
րութիւն իւր, խրախոյս առեալ 'ի Ղազանայ՝ բա-
րուոք պահել զթագաւորութիւն իւր, մինչև կարող
լինիցին անցանել 'ի սուրբ երկիրն:

## ԳԼՈՒԽ ԽԸ

Ղազան զեղբայր իւր զՂարպանդան կացուցանէ Թագաւոր և յաջորդ։

Կարգեալ զումեմն օրէնս, և յաջորդ զեղբայրն իւր, մեռաւ (Ղազան)։ Ղարպանդան որդի էր Արղունի տիկնոջ ջերմեռանդն քրիստոնէի, որ համապազօր 'ի մատրան իւրում առաջիկայ լինէր պատարագի. և 'ի մատրան անդ մկրտեցաւ որդին, և բարուք յոյժ կրթեցաւ 'ի հաւատս. այլ յետ վախճանի բարեպաշտուհի մօրն յարեցաւ 'ի Սարակինոսս. և այնպէս ժանտացաւ, զի բազում տառապանս հասոյց արքային Հայոց, և զամ մի ողջոյն առաւելապէս յաղարտ վարեաց զդաշտավայրն աշխարհին Հայոց։ Այլ ամենակալն և ամենողորմն Տէր ողորմեցաւ քրիստոնէից. քանզի յամսեանն յուլիսի եօթն հազար Սարակինոսք մտեալ էին յերկիր տէրութեան Հայոց ամենայն աւարհարութեամբ մինչև 'ի Տարսոն քաղաք ծննդեան առաքելոյն Պօղոսի. և յետ բազում չարիս առնելոյ յետս դարձան. բայց Թագաւորն Հայոց իւրովքն ընդ առաջ ել դարձելոցն, և յօգնականութեան բարձրելոյն՝ ամենեքին կամ ձերբակալ եղեն, և կամ ճարակ սրոյ, բաց յերեքհարիւր զերծելոց։ Գործեցաւ այս յաւուր կիւրակէի յութնուտասն յուլիսի։ Օ կնի այր բեկման ոչ եւս համարձակեցան Սարակինոսք դարձ առնել 'ի Հայս. իսկ սուլտանն Եգիպտոսի խաղաղութիւն արար դադարման զինուց և հաստատեաց ընդ արքային Հայոց։

## ԳԼՈՒԽ ԽԹ

Յաղագս որոշողութեանց մատենիս անդստին 'ի սկզբանէն։

Ես եղբայր Հեթում առաջիկայ գտայ նախաձառելոցս, 'ի վաղուց 'ի մտի եդեալ առնուլ զաքեմ կրօնաւորական. այլ վասն դժուարին անցից թագաւորութեան՝ ոչ կարացի թողուլ զթագաւորութիւնն.

բայց սակայն ըստ տեսչութեան բարձրելոյն լցի զփափաք և զուխտս սրտիս . գնացի 'ի Կիպրոս , և առի զկարգ Պրեմոնստրատեանց յամի 1305 ։ Փառք Այ, զի Թագաւորութն Հայոց իցէ 'ի բարի վիճակի , և ըստ զօրացուցանելոյ Այ 'ի ձեռն Լևոնի որդւոյ տեառն Թորոսի 'ի նախկինն վերածցի վիճակ . վասն զի փայլէ ամենայն առաքինութեամբք , և է հայելի ամենայն իշխանաց ։ Հաւատարիմ յօրինիչ գրոյս զայն իրս զորս պատմէ 'ի ժամանակէ Չինկիզ խանին մինչև 'ի Մանգոյ խան , էառ 'ի պատմութեանց Թաթարաց ։ Ի Մանգոյ խանէ մինչև 'ի մահ Հուլաւոնի պատմէ զոր միանգամ լուաւ 'ի քեռւոյ իւրմէ՝ որ առաջիկայ գտաւ եղելոցն ամենայնի ։ Ի սկզբնաւորութենէ Ապաղայ խանին մինչև 'ի վերջ գրոցս՝ ականատես եղև ամենայն գործոց ։ Մնայ այժմ պատմել որ ինչ գիտութեան արժանի կան յաղագս տէրութեան Թաթարաց և կարողութեան , մանաւանդ որ արդ կենդանի են ։

## ԳԼՈՒԽ ԽԱ.

Յաղագս Թամար խանի վեցերորդ ինքնակալի Թաթարաց , և իշխանութեան նորա և տէրութեան 'ի վերայ հպատակաց ։

Թամար խան նստի 'ի մեծ քաղաքն Կաթայի կամ Լոնս՝ 'ի շինեալն 'ի հօրէ իւրմէ ։ Սա հզօրագոյն է քան զամենայն Թաթարս , որ զազգս իւր քաջ ամրացոյց ճոխութեամբք և այլովք կարևորօք , վասն որոյ և ազնուականք կոչին . և երեք Թագաւորք ունողք զմեծ տէրութիւն հնազանդին ինքնակալիս . և իրք ամենայն վերաբերին առ ինքնակալն , և 'ի նմանէ լուծանին ։

Առաջին Թագաւորն ներքոյ անկեալ ինքնակալի՝ Չափար կոչեցեալ՝ նստի 'ի Թուրքաստան , և ունի ընդ իւրև չորեքհարիւր հազար սպառազինեալ արանց . բայց չունին զէնս և երիվարս . են յանդուգն և քաջ պատերազմականք . որ և ընդ ինքնակալին պատերազմ մղեն ։

Երկրորդ Թագաւորն կոչեցեալ Ուխթայի՝ նստի

'ի գաւառն Կումանիայ 'ի քաղաքն Սարայ ։ Սա կարէ գումարել վեցհարիւր հազար զինուորս , որք ունին երիվարս լաւագոյնս քան զնախասացեալս ․ բայց չեն այնպէս քաջք որպէս զնոսա ․ այլ տան պատերազմ ընդդէմ Ինքնակալի , ընդդէմ Հունգարաց և այլոց դրացեաց ։ Թագաւորս այս կեայ խաղաղութբ՟ ։

Երրորդն Պ արքանդա՝ նստի 'ի մեծն Ասիա 'ի քաղաքն Պաւրէժ ․ ընդ նովաւ են երեքհարիւր հազար արանց , ամենեցուն ակնածելիք ․ որ և ընդդէմ սուլդանին Եգիպտոսի մարտ յարդարէ , և ընդդէմ այլոց 'ի մարտ գրգռելոց ։ Յորմէ թագաւորն Ճափար և Սւխթայի մտադիւր 'ի բաց բառնային զօրութիւնն , բայց չկարեն ․ վասն զի երեք միայն են Ճանապարհք առ թագաւորութիւն մեծին Ասիոյմին այն՝ ընդ որ լինի գնալ 'ի Թուրքաստանէ ․ ուր պարտ է անցանել ընդ անապատ զաւուրս բազումս ․ և ոչ գտանի անդ ամենևին բուտ երիվարաց ։ Երկրորդ Ճանապարհն որ ասի Տոորպէնտ(կամ Փոտորպէնտ) (Դարբանտ), է մերձ 'ի ծովն , ուր Աղեքսանդր շինեաց զքաղաքն՝ որ կոչի Երկաթի դուռն ․ ընդ որ 'ի ձմերան միայն լինի անցանել ․ բայց գտանին փոսք և ամրոցք ․ և անդ կայ ձմերանի պահպանութիւն սպառազինաց ։ Եւ յիրաւի փորձեցին ազգք Սւխթայի յայնմ ժամանակի գաղտագողի անցանել ․ բայց 'ի դաշտավայրի կան թուչունք գեղեցիկ կապուտակք , և անդ մնանին , ոչք փախչին յոտարաց , և անցանեն ընդ այն պահպանութիւնս , և գուշակ լինին գալստեան թշնամեաց ․ ուստի պատրաստին և նոքա զդէմ ունել թշնամեաց ։ Երրորդ Ճանապարհն է ընդ ծով մեծ , զոր ոչ երբէք փորձեցին առնել թշնամիք ․ զի թագաւորութիւն Ափխազաց ամրացեալ է բազում ազգօք , որոց չէ մարթ վստահիլ յաղթել ։

# ԳԼՈՒԽ ԻԲ.

Յաղագս կրօնից, վարուց և բարուց Թաթարաց։

Ապաքէն Թաթարք ճանաչեն զմի ած անմահ, զոր և կարդան յօգնութիւն. այլ չունին ինչ պաշտօն նմա. ոչ աղօթս ունին, և ոչ պահս։ Զմարդասպանութիւն և զպոռնկութիւն չհամարին 'ի մեղս. առնուն բազում կանայս. և զմօրուն պարտական է առնուլ որդին, և եղբայր զկին եղբօրն։ Մահուչափ մեղս համարին բառնալ զսանձ 'ի բերանոյ ձիոց յուտելն։ Թաթարք են քաջ զինուորք և պատերազմողք, հնազանդք զօրավարին, և նշանօք դիւրաւ կառավարին։ Տէրն Թաթարաց յելանելն 'ի պատերազմ չտայ նոցա զթոշակ, այլ 'ի հարստահարութենէ և յաւարէ կեան, և տան անտի բաժին տեառն իւրեանց։ Շատ զէնս առնուն ընդ իւրեանս։ Կաթամբ և մսով ձիոց ապրին, զորս յոյժ լաւ վարկանին։ Աջողակք են 'ի ձիավարել, և քաջ աղեղնաւորք. հետևակք ծանր քայլեն. Ճարտարք են յառնուլ պատերազմաւ զքաղաքս և զամրոցս։ Ոչ ամօթ համարին 'ի փախուստ դառնալ, եթէ լաւ իցէ փախչել։ Ոչ են յանդուգն 'ի յարձակմունս մարտի. այլ եթէ հաճոյ թուի՝ դիմեն 'ի վերայ թշնամեաց, եթէ թշնամին չկարիցէ կռուել ընդ նոսա։ Եւ որովհետև քաջ նետաձիգք են, դժուարին է մարտնչել ընդ նոսա, կամ 'ի յետս կասիլն հետամուտ լինել նոցա. վասն զի կարգաւոր օրինօք յետս յետս խաղան, և 'ի թիկունս կոյս արձակեն զնետս։ Զօր Թաթարաց չտեսանի յայտնի, վասն զի միաբան երթան։ Թաթարք տան եկելոցն զոր ինչ ունին. որպէս և ինքեանք յայլոց պահանջեն. եթէ ոչ տացի, բռնի առնուն։ Գիտեն առնուլ զերկիր այլոց. այլ պահել ոչ։ Ի տկարանալն են խոնարհք, 'ի զօրանալն կամ 'ի բազմաթիւն լինել՝ են ամբարտաւանք։ Ոչ կամին զի ոք ստեսցէ, այլ ինքեանք կամակար ստեն, բաց 'ի գործոց պատերազմի և 'ի խոստովան լինելոյ զյանցանս. ուր հաւատարմութեամբ զամենայն ինչ խոստովանին։

# ԳԼՈՒԽ ԽԹ

*Յաղագս պայմանի՝ զոր պարտ է ունել 'ի սկսանելն զպատերազմ։*

Բանն պահանջէ, զի որ կամիցի սկսանել զպատերազմ, ունիցի զչորս պայմանս զայսոսիկ. Նախ զիրաւացի պատճառս. երկրորդ զկարեւորս 'ի պէտս սկսանելոյ եւ յանգ հանելոյ զպատերազմ. երրորդ պարտի հետազօտել զվիճակ եւ զկարողութիւն թշնամւոյն. չորրորդ պարտի սկիզբն առնել մարտի 'ի դէպ ժամու։ Քրիստոնեայք վասն գրաւելոյ զսուրբ երկիր՝ ունէին զարդարացի պատճառ, վասն զի է ժառանգութիւն Քրիստոսի. եւ առաջինք մեր բազում ինչ ստիպեցան կրել 'ի Սարակինոսաց. եւ ունէին բաւական զօրութիւն, միայն թէ միաբան մնացէին 'ի կռիւ։

# ԳԼՈՒԽ Ծ

*Յաղագս հանգամանաց Թագաւորութեանն Եգիպտոսի, եւ կարողութեան սուլդանին։*

Սուլդանն Եգիպտոսի եւ Ասորւոց կոչի Մելքմասուր՝ ծննդեամբ յազգէ Կումանաց. զօրք իւր են 'ի զանազան ազգաց. վասն զի բնակիչք կողմանցն այնոցիկ անզօր են 'ի մարտ. հետեւակք են սակաւք, հեծեալք շատ ըստ բաւականին, վարձեալք կամ գերեալք 'ի պատերազմի։ Սուլդանն Եգիպտոսի միշտ յերկիւղի է եւ 'ի կասկածանս, զի մի՛ աղմուկ լինիցի 'ի մէջ հպատակաց եւ սպանցի. վասն զի յոյժ ցանկան տէրութեան։ Զօր Բաբելոնի է քսան հազար հեծելազօր. մեծագոյն մասն չէ շատ զօրաւոր. ունին երիվարս ընտիրս, եւ մատակ ձիս աջողակս, այլ ոչ այնչափ ուժեղակս։ Զօր սուլդանին է միշտ պատրաստական 'ի ծառայութիւն. բնակեն 'ի Քայիր (Մըսըր). իւրաքանչիւր ոք ամ ըստ ամէ ունի դահեկանս (Ֆիօրինս) հարիւր քսան. այլ պարտական

է պահել զերիս ձիս, զորս 'ի կառավարութիւն զինուորաց տայ մեծամեծաց, որ կոչին Մուրատք. որոց և թոշակս տայ վասն զինուորաց. որք յետոյ գընեն զազգս ողորմելիս թեթևագին, և տան նոցա զոր կամին ։

## ԳԼՈՒԽ ԾԳ.

Յաղագս իշխանութեան սուլտանին յերկիր Ասորւոց ։

Յերկրին Ասորւոց բնակեն հինգ հազար զինուորք որք կեան յերկրէն և 'ի հասից. ունի և զեկս Պետուինս և տորկուացիս, որ քաջ են յառնուլ զքաղաքս. կեան 'ի յափշտակութենէ. և յայլ աշխատութիւնս չմարթին ստիպիլ. ապա թէ ոչ՝ փախչէին ընդ անապատն Արաբիոյ ։ Ունի և հետևակս աղեղնաւորս յերկրէն Մալբաք, և յայսկոյս լերին Լիբանանու, և յերկրին Ասասինաց, որ աջողակք են 'ի տապալել զքաղաքս, զորս գիտեն առնուլ մեքենայիւք, աղեղամբք և բաղխտորօք և անշէջ կրակօք, ակնահատութք և այլ ևս իրօք ։

## ԳԼՈՒԽ ԾԴ

Յաղագս թագաւորութեան եգիպտացւոց, և թէ որպէս ազգէ յազգ փոխադրեցաւ ։

Յոյնք կալան զտէրութիւն Եգիպտոսի զօրավարօք և վարչօք, ոյք զսակ հարկաքեալ առաքէին առ կայսրն. և տիրէին մինչև ցամն 703. բայց եգիպտացիք չկամելով տանել այնչափ ծանրութեանց, անձնատուր եղեն Սարակինոսաց. և ընտրեցին տէր ինքեանց յազգատոհմէ Մահմետի, ոյք զամս 347 կալան զայն տէրութիւն ։ Ապա տիրեցին Մարք, որք ռամկօրէն Քիւրտք կոչին ։ Իսկ յամի տեառն 1053 Ամարիկոս արքայ Երուսաղէմի ժողովեալ զքրիստոնեայ զօրս ըստ կարի, եմուտ յերկիրն Եգիպտոսի, և տիրեաց բազում քաղաքաց և գիւղից ։ Իսկ խա-

լիփայն տեսեալ թէ չկարէ զդէմ ունել քրիստոնէից, առաքեաց առ սուլդանն Հալէպու որ կոչիւր Խարակոն մեծաւ բազմութեամբ սպառազինաց, որ և զքրիստոնեայս փախուցեալ էին ։ Սորա տեսեալ զմեծութիւնս Եգիպտոսի՝ ձերբակալ արար զխալիփայն, եարկ 'ի բանտ, և ինքն սուլտանացաւ, որ էր յերկրէն Մարաց խորազմեան ։

Յետ մահուան նորին յաջորդեաց նմին որդի իւր Սալահատին, որ յաղթեաց քրիստոնէից, և էառ զԵրուսաղէմ ։ Զկնի մահու սորա յաջորդեցին եղբարք իւր և եղբօրորդիք մինչև 'ի Մելիքսալա, որ տիրէր 'ի ժամանակին, յորում Թաթարք արկին ընդ լծով զթագաւորութիւն Կումանաց. որ և վաճառեցին զբազում Կումանս ։ Եւ սա առաքեաց զմեծ գումար դրամոց 'ի գնել անդրէն զԿումանս, որք բերեալ եղեն յԵգիպտոս. և սիրեաց զնոսա յոյժ, և ետ դարմանել, և կրթեաց զնոսա 'ի ձիավարել և 'ի ձգել զնետ և 'ի վարել զայլ զէնս, և միշտ կալաւ առ իւր ։

Իսկ 'ի ժամանակին՝ յորում երանելին Լուդովիկոս առ սէր քրիստոսական անուան բանտարգել եղև, Կումանքն սպանին զսուլդանն, և կացուցին Կումանյանուն Թուրքինեանց. և վասն այսր պատճառի Թագաւորն Գաղղիոյ և եղբայր նորա դիւրաւ ազատեցան 'ի բանտէ ։ Այս Կումանք յԵգիպտոս կոչին Խաբշակ ։ Իսկ յետ սակաւ աւուրց Կաթող նոյնպէս Կուման՝ զԹուրքինեանն սպան սրով, և ինքն սուլտանացաւ, և կոչեցաւ Մելիքմէէս ։ Սա յաղթահարեաց զԿիպողա զօրավարն Թաթարաց, զոր յղեալ էր Հուլաւուն 'ի պահպանութիւն երկրին Ասորւոց ։ Եւ յորժամ դառնայր Մելիքմէէս յԵգիպտոս, զճանապարհայն սպան զնա Բնտուխտար Կումանն, և ետ կոչել զինքն Մելիքդայիր ։ Սա էր այր խորագէտ յոյժ. և կալաւ զբազում տեղիս, և զքաղաքն Անտիոքայ յամի 1268. և ապա վնաս բազում հասոյց արքային Հայոց ։

Յաւուրս այսր սուլդանի Թագաւորն Անգղիոյ շարժեաց զպատերազմ, զոր սուլդան խորհեցաւ սպանանել 'ի ձեռն մարդասպան արբանեկի, որ Թունաւոր սուսերաւ խոցեաց զԹագաւորն. այլ զկնի բազում

տարժամմանց առողջացաւ ։ Յետ այսորիկ Մէլիք-Դայիր դեղամահ բարձաւ 'ի կենաց 'ի Դամասկոս, և սուլտանացաւ որդի նորա Մէլիքսայիտ. այլ փութով Ալֆի Կումանն փախստական արար զնա արտաքոյ թագաւորութեանն Եգիպտոսի, և ինքն սուլտանացաւ ։ Սա էառ զքաղաքն Տրիպօլիս յամի 1289 ։

## ԳԼՈՒԽ ԾԳ

Յաղագս Աքոն քաղաքի թէ որպէս առաւ 'ի ձեռաց քրիստոնէից ։

Ի յաջորդ ամի կամեցաւ պաշարել զքաղաքն Աքոն, այլ 'ի զօրավարէ իւրմէ սպանաւ դեղով. բայց և նա յօշ յօշ պատառեցաւ յայլոց. և կարգեցաւ սուլդան որդին Ալչեայ Մէլատափէրահ ։ Սա էառ զքաղաքն Աքոն յամի 1291. այլ 'ի գնալ իւրում 'ի ծերակոյտ, սպանաւ 'ի ծառայէ իւրմէ, որ ակն ունէր սուլտանանալ. և ինքն յայլոց սպանաւ ։

Յետ այսորիկ կացուցին տէր և սուլդան զՄէլէքնազիր, որ էր եղբայր Մէլաշարաֆայ. և թագաւորէ յաւուր յայսմիկ. և քանզի կարի մանուկ էր, տուաւ նմա պաշտպան Կիտողա Թաթարն՝ ծառայ գնեալ 'ի հօրէն, և նա յափշտակեաց զտէրութիւնն, և զմանուկ սուլդանն ետ յամուրն Մոնրէալ՝ տալով զամենայն պէտս ։ Այս Կիտողա ետ կոչել զինքն Մէլիքհատէլ ։ Առ սովաւ եղև այնչափ սով պարենից, զի ամենայն Սարակինոսք մեռանէին, եթէ քրիստոնեայք առ սէր շահից չյաճախէին պարէնս ։

Ի գալ Թաթարացն ժողովեաց զզօրս իւր, և գնաց 'ի պաշտպանութիւն երկրին Ասորւոց. և սիրեաց յոյժ զազգ իւր. ուստի Կումանք առ նախանձու բարձին 'ի նմանէ զտէրութիւնն, և տէր կացուցին զԼաշին, որ զերիս ամս մնաց 'ի Գահիր. ապա յիջանել իւրում 'ի դաշտ առ 'ի խաղալ, անկաւ ձին ընդ նովաւ, և ճմլեաց զսրունս նորա. և 'ի խաղալն զխաղ՝ Շախորոմ ծառայն կորզեաց զդաշոյն սուլդանին, և եհար 'ի կառափն. այլ անդէն գլխատե-

ցաւ սպանողն։ Աստուստ 'ի մեծ երկպառակութիւն անկան Սարակինոսք. մինչև զմանուկ սուլդանն Մէլէքնասիր եդին անդրէն յաթոռն։ Սա է այն՝ զոր Ղազանն յաղթահարեաց պատերազմաւ։

# ԳԼՈՒԽ ԾԴ

Յաղագս դրից և հանգամանաց Եգիպտոսի։

Թագաւորութիւնն Եգիպտոսի է յոյժ ընդարձակ և վայելչադիր. երկայնութիւնն հնգետասան աւուրց, և լայնութիւնն երեքօրեայ միայն. և է որպէս կղզի շուրջ պատեալ յանապատէ և յաւազուտէ. և 'ի միոյ կողմանէ ունի զծովն յունական. յարևելից կուսէ դրացի է թագաւորութեան Ասորւոց, բայց 'ի բացեայ է ճանապարհ ութօրեայ աւազով. յարևմտից կուսէ ունի զաշխարհն Բարբարոսաց, որ կոչի Բարդադ. այլ 'ի մէջ երկոցունց է անապատ հընգետասան աւուրց. 'ի հարաւոյ կուսէ է թագաւորութիւն ազգաց՝ որք են քրիստոնեայք սևագոյն. և 'ի մէջ երկուց կայ անապատ երկոտասան աւուրց։

Ի թագաւորութեան եգիպտացւոց են հինգ գաւառք. առաջինն և մեծն կոչի Սայիտ. երկրորդն Դեմեսոր. երրորդն Աղեքսանդրիա. չորրորդն Ռէշինտ, և սա է կղզի գետովք փակեալ. հինգերորդն Տիմիադ։ Մեծ քաղաքն կոչի Կայիր՝ ընդարձակ և ճոխ մեծութեամբ. կայ և այլ քաղաք որ կոչի Մըսըր առ Նեղոս գետով, որ 'ի սուրբ գիրս Գեհոն յորջորջի, և ոռոգանէ զամենայն երկիրն, և առնէ արգաւանդ. ունի զառատութիւն ձկանց, և է նաւարկելի. կան 'ի գետն և կոկորդիլոսք, որ կլանեն զմարդիկ և զձիս և զայլ կենդանիս։ Աճել սկսանի 'ի մէջն ամսեանն օգոստոսի մինչև 'ի տօն սրբոյն Միքայելի, և մետասան աւուրբք ջրէ զերկիրն. ապա սկսանի 'ի նուազել, և երկիրն ցանի։ Ի քաղաքըն Մըսըր է սիւն կճեայ, և չափի աստիճան ջրոյ. և ըստ յորդութեան ջրոյն հատանին գինք իրաց. ջուր գետոյն առողջարար է յոյժ։

Ի թագաւորութեան Եգիպտոսի են երկու նաւահանգիստք ծովու, Աղեքսանդրիա և Տիմիադ. Աղեքսանդրիա է քաջ ամրացեալ: Ըմպեն զջուր 'ի Նեղոսէ, զոր ընդ ծածուկ անցս առաքեն 'ի գուփս (կամ յաւազանս): Տիմիադ առ գետոյն Նեղոսի հասելոյ պատեալ է շուրջանակի պարսպօք, որ երկիցս առաւ, միանգամ 'ի քրիստոնէայ թագաւորէն Երուսաղէմի, և երկրորդ անգամ 'ի սրբոյն Լուդովիկոսէ գաղղիացւոց արքայէ. և վասն ազատութեան թագաւորին անդրէն տուաւ Սարակինոսաց, և բոլորովին քակեցաւ, և նորոգ շինեցին հեռի 'ի գետոյ և 'ի ծովէ: Ի նաւահանգստից այտի սուլտանն ունի մեծ եկամուտս: Ունին զմիս ընտանի հաւուց, ուլոց և թռչնոց, այլ արջառոյ սակաւ. և փոխանակ այնր ուտեն զմիս ուղտուց: Մի միայն բերդ կայ 'ի Գահիր, և այն ոչ կարի ամուր. իսկ այլքն ամենայն են անպարիսպ, վասն որոյ չէ խիթալի ընդ մեծ դիմակալութիւն:

# ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ

ԵՐԵՔ ՀԱՐԻՒՐ ԵՒ ՄԷԿ ԱՄԱՑ ԿԱՐՃ Ի ԿԱՐՃՈՅ ՀԱՒԱՔԵԱԼ Ի ԶԱՆԱԶԱՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆՑ ՀԱՅ ՓՌԱՆԿ ԵՒ ԱՍՈՐԻ

ՇԱՐԱԳՐԵԱԼ

## ՊԱՐՈՆ ՀԵԹՄՈՅ

## ՏԵԱՌՆ ԿՈՌԻԿՈՍՈՅ

ԵՒ ԱՐԱՐ ԶԱՅՍ ԲԱՆՔ Ի ԹՈՒԻՆ ՀԱՅՈՑ ՉԽԵ· ԵՒ ՅԱՄԻ ՄԱՐԴԵՂՈՒԹԵԱՆ ՏԵԱՌՆ ՌՄՂԶ

| ԹՈՒԱԿԱՆՔ | | |
|---|---|---|
| Քրի | Հայոց | |
| 1076 | ՇԻԵ | Ի թուականին Հայոց ՇԻԵ Գագիկ թագաւորն Հայոց սպանաւ յորդւոցն Մանտալէի 'ի բերդն Կենդրոսկոյի 'ի Կիկանդոնն: Յետ որոյ Ռուբէն ազգականն նորա երթեալ բնակեցաւ 'ի սահմանս Կոսիտառոյ. և անտի հասեալ 'ի գեղն Կոռոմոզոլ, անդ վախճանեցաւ: |
| 1097 | ՇԽԶ | Նա և որդի նորա Կոստանդին եառ ըզՎահկայն. և սա տիրեաց 'ի վերայ ազգին Հայոց: Նոյն առաջին բասաձն Փռանկաց զաւ յԵրուսաղէմ և ազատել յանօրինաց 'ի ձեռն միայնակեցի միոյ Փռանկ, որոյ անունն Փէր Էրէմիթ կոչիւր. և էր թիւ մարդեղութեանն Քրիստոսի ՌՂԹ: Ի նոյն ամին բասաձն եառ զԱնտիկիա քաղաքն 'ի Յունաց: |
| 1098 | ՇԽԷ | Ազատեցան յանօրինաց Անտիոք և Ուռհա: |

| | | |
|---|---|---|
| 1099 | ՇԽԸ | Ազատեցաւ Երուսաղէմ, և տուկն Կոտուֆրէ տիրեաց Երուսաղէմի ։ |
| 1100 | ՇԽԹ | Մեռաւ Կոտուֆրէ, և եկաց առաջին Թագաւոր Երուսաղէմի Պալտուինն եղբայրն Կոտուֆրէի կոմսն Ուռհայոյ ։ |
| 1101 | ՇԾ | Առաւ Խուսայրն յանօրինաց ։ |
| 1102 | ՇԾԱ | Պարոնն Հայոց Կոստանդին մեռաւ. և տիրեաց փոխան նորա անդրանիկ որդին իւր Թորոս ։ |
| 1104 | ՇԾԳ | Առաւ Աքա յանօրինաց ։ |
| 1110 | ՇԾԹ | Առաւ Տրապօլիս յանօրինաց ։ Ի նոյն ամին առաւ Պէրութ և Սայտէ յանօրինաց ։ |
| 1115 | ՇԿԴ | Շինեցին քրիստոնեայք զԿարաք և զՇոպաք ։ |
| 1116 | ՇԿԵ | Մեռաւ Պալտուինն Թագաւորն Երուսաղէմի. և Թագաւորեաց երկրորդ Պալտուինն Տէպուրք ազգական նորին ։ |
| 1129 | ՇՀԸ | Մեռաւ Հայոց պարոն Թորոսն. և էառ զիշխանութիւն եղբայր նորա Լևոն ։ |
| 1131 | ՇՁ | Մեռաւ Թագաւորն Երուսաղէմի Պալտուինն. և երրորդ Թագաւորեաց փեսայ նորին Ֆուքն ։ |
| 1137 | ՇՁԶ | Թագաւորն Յունաց Պորֆիրօժէն էառ զԿիլիկիա 'ի պարոն Լևոնէ. և զԼևոն երկու որդւովքն առաքեաց 'ի Կոստանդինուպօլիս, որ և անդ մեռաւ ։ |
| 1143 | ՇՂԲ | Մեռաւ Թագաւորն Երուսաղէմի Ֆուքն. և չորրորդ Թագաւորեաց որդի նորա Պալտուինն ։ |
| 1144 | ՇՂԳ | Թորոս քաջ որդին Լևոնի եկն 'ի Կոստանդինուպօլսէ, և էառ զՎահկայն, և նորոգեաց զիշխանութիւն Հայոց ։ |
| 1146 | ՇՂԵ | Եղև երկրորդ բասաձն Ֆռանկաց ։ Եկն քուռատն փրիօրն Ալամանաց, և Լոյզն ռէ տէ Ֆռանցն ։ |
| 1147 | ՇՂԶ | Ամբրուրն և ռէ տէ Ֆռանցն պաշարեցին զԴամասկոս, և ոչ կարացին առնուլ ։ |

1157 ՈԶ Առաւ Ասխալան յանօրինաց։ Պարոնն Հայոց Թորոս կրօնաւոր լեալ՝ վախճանեցաւ. և կալաւ զիշխանութիւն նորա Մլեհ եղբայր իւր Խստորոն։

1163 ՈԺԲ Թագաւորն Երուսաղէմի Պալտինն մեռաւ։

1164 ՈԺԳ Մլեհ եղբայրն Թորոսի սպանաւ 'ի Սիս, և իշխանայք նորա բերեալ զՌուբէն զորդին Ստեփանէի եդին պարոն Հայոց։ Ի սոյն ամի թագաւորեաց Երուսաղէմի հինգերորդ Ամաուրինն։

1167 ՈԺԶ Ամաուրին թագաւորն Երուսաղէմի եառ զՍանկարիա և զՊլպէս։

1168 ՈԺԷ Ամաուրին թագաւորն Երուսաղէմի խանկրեց զՍալահատինն, և Յունաց օգնութեամբն պաշարեաց զՏաթիաթն և ոչ կարաց առնուլ։

1169 ՈԺԸ Պլինար խլվեցաւ 'ի քրիստոնէից։

1170 ՈԺԹ Եղև շարժ սաստիկ, և փլան քաղաքք և բերդք բազումք, և 'ի Սեհլն առաւել։

1173 ՈԻԲ Տէր Ներսէս կլայեցին կաթողիկոսն Հայոց փոխեցաւ առ Քրիստոս յօգ. ժդ օրն հինգշաբաթի։

1174 ՈԻԳ Թագաւորն Երուսաղէմի Ամաուրին մեռաւ, և վեցերորդ թագաւորեաց որդի նորա Պալտին, որ և անկաւ 'ի գոդութիւն։

1176 ՈԻԵ Կայսրն Յունաց Մանուէլն յաղթեցաւ 'ի Խըլիճ ասլան սուլտանէն մերձ Իկոնն։

1180 ՈԻԹ Կայսրն Յունաց Մանուէլն մեռաւ։

1181 ՈԼ Եօթներորդ թագաւորեաց Երուսաղէմի փոքր Պալտինն որդին մարքէզին՝ յառաջ քան զվախճան Պալտինին գոդոյն։ Նա շինեաց քաղաք 'ի վերայ Յորդանանու 'ի հունն Յակոբայ։ Առաւ Իմնեքոտիա և Ամասիա։

1184 ՈԼԳ Մեռաւ Պալտին գոդին։

1186 ՈԼԵ Պարոնն Հայոց Ռուբէնն մեռաւ. և

եառ զիշխանութիւնն Լեւոն եղբայրն իւր։ Ի սոյն ամի Պալտին փոքրն մեռաւ. և եկաց ութերորդ թագաւոր մայր նորա Սիբիլլա թագուհին, և հայրդիրն իւր Պալտնին Կի տ' Լուզինեանն։

1187 ՈԼԶ Եղև կոտորումն քրիստոնէից 'ի Սալահատինէն մերձ յԵրուսաղէմ, և կալան զթագաւորն Կի. և անյայտ եղև սուրբ խաչն Քրիստոսի։ Յորում աւուր առին զԱքքա 'ի Սալահատինն, և ապա զԱսկալոնն. որ և 'ի սոյն ամի եառ Սալահատինն զԵրուսաղէմ, և զամենայն Սէհլն բաց 'ի Տիւրոսէ և 'ի Տրապօլսոյ, յամի տեառն Յիսուսի ՌՃՁԷ։

1190 ՈԼԹ Կայսրն Գերմանաց Ֆրետրիկ խեղդեցաւ 'ի գետն Սելեւկիոյ, և թաղեցաւ յԱնտիոք։ Եւ Ֆիլիպ ռէ տէ Ֆրանցն, և ռէ Ռառլ թագաւոր Անկլիզաց անցին յայսկոյս ծովու, և պաշարեցին զԱքքա. որ և 'ի գալն Անկլիզաց եառ զկղզին Կիպրոսի 'ի Յունացն 'ի Կիրսակ տուկէն։ Եւ յայսմ սկիզբն եղև կարգաւորութեան ալաման փրերացն։

1191 ՈԽ Ռէ տէ Ֆրանցն և Անկլիզաց թագաւորն արարին սէր ընդ Սալահատինն։ Կի թագաւորն Երուսաղէմի գնեաց զԿիպրոս կղզի 'ի թագաւորէն Անկլիզաց։

1192 ՈԽԱ Թագաւորն Անկլիզաց արար սէր ընդ Սալահատինն. և դարձուցին 'ի քրիստոնէքն զՃաֆն և զՍուֆ, զԼուսայրն և զԿաֆաս։

1194 ՈԽԳ Կի թագաւորն Կիպրոսի մեռաւ։ Երկրորդ թագաւորեաց Կիպրոսի Հէմրի եղբայրն իւր։ Լեւոն պարոնն Հայոց կալաւ զՊեմունդ՝ բրինձն Անտիոքայ, և եդ 'ի բանտի 'ի կլայն Սսոյ։

1195 ՈԽԴ Ազատեցաւ Պեմունդ բրինձն Անտիոքայ 'ի բանտէն միջնորդութեամբ Հեռի գունդին. և եղև խաղաղութիւն

| | | |
|---|---|---|
| | | ընդ պարոն Լևոն և ընդ բրինձն ։ |
| 1196 | ՈԽԵ | Մեռաւ Սալահատինն. և տիրեաց Մսրայ և Դամասկոսի սուլտան եղբայր նորա ։ |
| 1197 | ՈԽԶ | Պարոնն Հայոց Լևոն պսակեցաւ թագիւ յաւուրս յայտնութեան, և եկաց առաջին թագաւոր 'ի Կիլիկիա ։ Զճպլէթ դաւով առին յանօրինաց ։ Մէլիք յէտն եառ զՃաֆն 'ի քրիստոնէից ։ |
| 1198 | ՈԽԷ | Պէրութ առաւ յանօրինաց ։ |
| 1201 | ՈԾ | Մեռաւ Պէմունդն որդւոյն, որ էր կոմս Տրապօլսոյ ։ |
| 1202 | ՈԾԱ | Եղև երկրորդ շարժն և կործանեցան բազում քաղաքք 'ի Սէհլն ։ |
| 1203 | ՈԾԲ | Լևոն թագաւորն Հայոց եառ զԱնտիոք ։ |
| 1204 | ՈԾԳ | Դուքսն տէ Ֆլանդր և տուկն Վնիժոյ առին զԿոստանդինուպօլիս 'ի Յունաց. և եղև կայսր Կոստանդինուպօլսի Պալտինն ։ Զօրքն Երուսաղէմի և Կիպրոսի գնացին յԵգիպտոս, և աւերեցին բազում տեղիս 'ի ծովեզերս ։ Ֆիլիպ ռէ տէ Ֆրանցն եառ զՆորմանդոյ աշխարհն 'ի թագաւորէն Անկլիզաց ։ |
| 1205 | ՈԾԴ | Մեռաւ թագաւորն Կիպրոսի Հեմրի ։ |
| 1206 | ՈԾԵ | Մեռաւ բրինձն Անտիոքայ Պէմունդըն. և եկաց որդին նորա Պէմունդ միակնի ։ |
| 1207 | ՈԾԶ | Թագաւորն Հայոց Լևոն կալաւ զՍեւաստոսն Հեռի որդւովքն, և զՍումարտիաշն, զՃօշտինն և զՊալտինն ։ Զտէր Յոհան կաթողիկոսն ընկեցին յաթոռոյն, և եդին կաթողիկոս Հայոց զտէր Դաւիթ զարքակաղնին ։ |
| 1208 | ՈԾԷ | Պէմունդ բրինձն Անտիոքայ խանկրեց զիւր ձիաւորքն և զԱնտաքոյ Կումինն որ մտել էին 'ի վերայ նորա. և կալաւ զպատրիարգն՝ որ և 'ի բանտին մեռաւ ։ Խոսրով շահ սուլտանն Իկոնիոյ որդին |

Ղըլըճ ասլանին էառ զԲերդուսն 'ի Հայոց
և կալաւ զտէրն նորա զԳրիգոր զորդին
Լևոնի :

1209 ՈԾԸ Պատերազմեցաւ Լաշքար ընդ սուլ-
տանն Իկոնիոյ՝ ընդ Խոսրով . և սպանաւ
սուլտանն , և եկաց 'ի տեղի նորա Իզա-
տինն Քէքաւուզ :

1210 ՈԾԹ Պսակուեցաւ ռէ Ջուանն ընդ Թագու-
հին Երուսաղէմի Մարիին , և եղև Թա-
գաւոր Երուսաղէմի տասներորդ : Լևոն
Թագաւորն Հայոց եանց 'ի Կիպրոս , և
էառ իւր կին զքոյր Թագաւորին Կիպրո-
սի զՍիբիլն :

1211 ՈԿ Մեռաւ տէր Դաւիթ կաթողիկոսն
Հայոց . և դարձեալ կալաւ զաթոռն տէր
Յոհաննէս :

1213 ՈԿԲ Հաշիշիքն սպանին զՊեմունդ բրինձն
Անտիոքայ . և եղև մեծ պատերազմ ընդ
Սպանիոյ Թագաւորն և ընդ Մաղրիպքն :

1214 ՈԿԳ Ֆիլիպ ռէ տէ Ֆրանցն խանկրեց
զըմբրուրն Ալամանաց զՕտոն, և Լոյզ որ-
դի ռէ տէ Ֆրանցին խանկրեց զԱնկլի-
զաց Թագաւորն զռէ Ջուանն :

1215 ՈԿԴ Իննոցենցիոս պապն արար ժողով ընդ-
հանրական վասն ազատելոյ զԵրուսա-
ղէմ յանօրինացն . և էին 'ի ժողովքն նիբ
եպիսկոպոսք , և հէ արքեպիսկոպոսք :

1216 ՈԿԵ Մեռաւ ըմբրուրն Ալամանաց , և ե-
կաց Ֆրետրիկն յետ նորա : Թագաւորն
Հայոց Լևոն էառ դաւով 'ի փիշերի զԱն-
տիոք , և կացոյց անդ բրինձ զՌուբէն
թոռն եղբօրն իւր : Քէքաւուզ սուլտանն
պաշարեաց զբերդ Կապանն, և կալաւ զիշ-
խանն Հայոց զպարոն Կոստանդ գօնտըս-
տապլն որ կոչէին Աւագ պարոն, և զպարոն
Կոստանդինն Լամբրոնին տիրոջն որդին,
և զՎասակ Մամղաոյ տէրն և զայլս եւս :

1247 ՈԿԶ Եկն Թագաւոր Ունկռաց 'ի յայս կոյս
ծովու , և շինեցաւ Ջաստել բլրինն բերդ

Դամբլցեց. և ուէ Ժուանն Երուսաղէմի, և պատրիարգն շինեցին զՍայրին բերդն :

1218 ՈԿԷ Թագաւորն Կիպրոսի Ուգն մեռաւ 'ի Տրապօլիս. և զօրքն քրիստոնէից գնացին 'ի Տեմիաթ : Մեռաւ թագաւորն Սպանիոյ Ալֆուն բօնն : Թագաւորն Հայոց Լևոն ետ զկին սուլտանին զբերդն Լուլվա և զԼաւզատի, և ազատեաց զկալանաւոր իշխանայքն իւր :

1219 ՈԿԸ Եղաւ Տամաթն յանօրինաց : Պէմունդ բրինձն խլեաց զԱնտիոք յՌուբէնայ : Մեռաւ թագաւորն Հայոց Լևոն :

1220 ՈԿԹ Մեռաւ Փիլիպն ուէ տէ Ֆրանցն, և թագաւորեաց որդին նորա Լուդն : Պարոն Աւհրամ մարաջախտն Հայոց և այլ իշխանայքն կամեցան պարոնացնել զՌուբէն բրինձն. և պայլն Հայոց Կոստանդին կոտորեաց զնոսա մերձ 'ի Սիս, և կալաւ զբրինձն Ռուբէն և զիշխանսն 'ի քաղաքն Տարսուս : Մեռաւ կաթողիկոսն Հայոց տէր Յոհաննէս. և եղև կաթողիկոս տէր Կոստանդին Բարձրբերդցին :

1221 ՈՀ Թագաւորն Հայոց Լևոն մեռաւ : Կորուսին քրիստոնէքն զՏամիաթն : Թագաւորեաց Հայոց Փիլիպն որդին կոյր բրնձին՝ ամուսնանալով ընդ Զապէլ դստերն թագաւորին Հայոց Լևոնի : Եղև շարժ սաստիկ, և փլոյց զՊաֆն 'ի Կիպրոս կղզին :

1225 ՈՀԴ Թագաւորն Հայոց Փիլիպ ըմբռնեցաւ յիւրոց զօրացն :

1226 ՈՀԵ Թագաւորեաց Հայոց ամենաբարի թագաւորն Հայոց Հեթում որդի Կոստանդեայ աւագ պարոնին Հայոց : Սա շինեաց սագաշէն տաճար սուրբն Սոփիա 'ի Սիս : Ալաման Փրերքն սկիզբն արարին շինման Մունֆորդ բերդին :

1227 ՈՀԶ Կամոնեցին ընդ սուրբս զերանելին

Տոմինիկոս և զսուրբն Ֆրանցիսկոս ։

1228 ՈՀԷ Ըմբրուր Ֆտրիկն եկն յայսկոյս և շինեաց զՅաֆն ։

1229 ՈՀԸ Ֆտրիկն արար սէր ընդ Մելիք-Քեմլին, և դարձուցին 'ի քրիստոնէքն զԵրուսաղէմ և զՆազարէթ և զՍիոն ։

1231 ՈՁ Խուանկպարտքն առին զՊէրութ ։

1232 ՈՁԱ Խուանկպարտքն խլեցին զԿիպրոս կղզին. և Պէրութայ տէրն խանկրեց ընդ Խուանկպարտքն, և էառ զկղզին ։

1258 ՉԷ Հուլաւուն խանն էառ զԱլամութ, և կոտորեաց զՀաշիշք ։ Դարձեալ էառ Հուլաւուն զԲաղտատ, զՀալապ և ըզԴամասկոս ։

1261 ՉԺ Պալէոլոգն էառ զԿոստանդինուպօլիս 'ի Ֆռանկնոյն ։

1266 ՉԺԵ Ամլմօթն զօրօք անօրինաց կոտորեաց զզօրս Հայոց 'ի Մառի, և կալաւ զորդին Թագաւորին զԼևոն, և սպան զԹորոսն զմիւս որդին, և գերեաց և այրեաց ըզՀայք մինչ 'ի Բարձրբերդ և յԱտանա. զՍիս այրեցին, և զաւագ եկեղեցին. և բացին Թագաւորաց և զիշխանաց զոսկերսն հանեալ այրեցին հրով և հոսեցին հողմով ։

1268 ՉԺԷ Պնտուխտար սուլտանն Մսրայ էառ զՅաֆն և փլոյց զՊիաֆօրդն ։

1274 ՉԻԳ Պնտուխտար եմուտ յերկիրն Հայոց և աւերեց ։

1282 ՉԼԱ Մանկօ տամուր եղբայրն Աբաղայ խանին պատերազմեցաւ մուղալ զօրօք ընդ Ալփի Մսրայ սուլտանին. և կոտորեցան յանօրինացն բազումք. և 'ի փախուստն մուղալին՝ կորեան երկու հազար քրիստոնեայք ։

1283 ՉԼԲ Մեռաւ Աբաղայ խանն, և Մանկօ տամուրն. և նստաւ Ահմատն խան ։

1285 ՉԼԴ Սպանաւ Ահմատ խանն. և Արղունն որդին Աբաղին եղև խան ։

| | | |
|---|---|---|
| 1289 | ՉԼԸ | Մեռաւ Արղուն խանն. և նստաւ եղ-բայրն իւր Քեղաթուն։ Ալփի սուլտանն եառ զՏրապօլիս 'ի քրիստոնէից։ |
| 1290 | ՉԼԹ | Մեռաւ Ալփի սուլտան Մսրայ. և ե-կաց սուլտան որդի նորա Աշրաֆն։ |
| 1291 | ՉԽ | Աշրաֆ եառ զԱքքա 'ի քրիստոնէից. և թողին քրիստոնէքն առանց պատերազ-մի զՍուր, զՍայտէ, զՊէրութ։ Եւ յայսմ ամի ջնջեցաւ քրիստոնէութիւնն 'ի Սեհլէն։ |
| 1292 | ՉԽԱ | Աշրաֆն եառ զՀայրապետանիստ դղ-եակն Հայոց զՀռոմկլայն. և գերեաց զտէր Ստեփաննոս կաթողիկոսն։ Եւ ե-տուն 'ի սուլտանն տրտմութեամբ ըզ-Մագն, զԱպլճէս. և վասն սիրոյ ետ թագաւորն Հայոց Հեթում զանմատչելի դղեակն Պեհեսնի։ Յայսմ ամի ևս մո-լորեցան զգատիկն Հայք, և Ասորիքն Նըս-տորք։ |
| 1293 | ՉԽԲ | Աշրաֆ սուլտանն սպանաւ յիւր ծա-ռայից, և նստաւ սուլտան Քիթպու-ղայն։ Հեթում թագաւորն Հայոց ետ զպարոնութիւնն յիւր եղբայրն 'ի պա-րոն Թորոսն, և ինքն եմուտ 'ի կարգ և կրօնաւորեցաւ և Մակար կոչեցաւ։ Չնկէզացն երկոտասան խալէ կռվեցան յԱյաս ընդ երեսուն և երկու խալէ և ընդ Գարիթ Սէնեցիանացն, և շահեցան Չնկէզքն քսան և չորս խալէ։ Եառ Հե-թում թագաւորն զիւր թագաւորութիւնն։ Եդաւ կաթողիկոս Հայոց տէր Գրիգոր Տուրք երիցանց։ |
| 1294 | ՉԽԳ | Սպանաւ Քեղաթու խանն. և նստաւ Պայտուն խան։ Եւ 'ի սոյն ամի սպանաւ Պայտուն, և նստաւ Ղազանն խան, որ-դին Արղունին։ |
| 1296 | ՉԽԵ | Հեթում թագաւորն Հայոց և իւր եղ-բայրն պարոն Թորոս տվին զթագաւո-րութիւնն 'ի Սմբատն, և ինքեանք գնա |

ցին 'ի Կոստանդինուպօլիս ։ Ո՛նվէզքն կռուեցան ընդ Մենեցիանքն 'ի Կոստանդինուպօլիս, և սպանին զպայլն և յիսուն և վեց ոգի. և առին աւար բազում ։ Ի սոյն ամի սպանաւ սուլտանն Մսրայ Նիխթպուղա. և նստաւ սուլտան Հուսամատին Լաչինն ։

1307 ՉԾԶ Յամսեանն նոյեմբերի ժէ. սպանաւ աւագ պարոն Հայոց Հեթումն և որդին պարոն Թորոսին եղբօրն աւագ պարոնին, և Լևոն Թագաւորն Հայոց, և այլ իշխանք դաւով 'ի գիշերի 'ի ստորոտն Անարզաբու դղեկին ։

# ՑԱՆԿ

| ԷՋ | ՏՈՂ | ՎՐԻՊԱԿՔ | ՈՒՂՂԵԱԼՔ |
|---|---|---|---|
| 12 | 1 | *կարէին* | *կարեն* |
| 14 | 18 | *Հալօցէն* | *Հալցյէն* |
| 15 | 7 | *Ապվաս* | *Ապւքաս* |
| 25 | 1 | *այս Թուրքինեանք* | *Թուրքինեանք* |
| 28 | 37 | *արիաբար, և քաջապէս* | *արիաբար և քաջապէս,* |
| 50 | 3 | *սպանին* | *պանին* |